1916 № 49.—Դեկտեմբերի 4

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 6 րուբլի, կէս տարուան 4 ր.: Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.: Արտասահման՝ տարեկան 10 ր., կէս տարուան 6 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից:

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար համարուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների մասին խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ:

## *ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1917 Թ.*

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

*ԾՐԱԳԻՐ.* 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ. 5. Պոստարկղ և յայտարարութիւն.

Թերթը բաղկացած կլինի 16 մեծադիր երեսներից և լոյս կտեսնէ կիրակի օրերը:

Բաժանորդագինն է տարեկան 6 ռուբլի, կէս տարուան 4 ռուբլի, հայ դպրոցների, ուսուցիչների, հայ հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 5 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի: Արտասահման 10 ռուբլի, կէս տարուան 6 ռ.:

Բաժանորդագրութիւն ընդունւում է խմբագրատանը, Թիֆլիս, Արասարդեան հրապարակ, № 7 և Ընկերութեան գաւառական ճիւղերի վարչութիւններում:

Խմբագիր՝ Ս. Յարութիւնեանց

Հրատարակիչ՝ Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Համաձայն Կովկասեան ռազմաճակատի փախստական գործերի գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեանի յանձնարարութեան, Երեւանում կազմուած է Փախստ. Կոմիտէ իմ նախագահութեամբ, որի անդամները լինելու են ներկայացուցիչներ Եղբայրական Օգնութեան Յանձնաժողովի, Նպաստամատոյց և Բարեգործական Ընկերութիւնների։

Այդ Կոմիտէի տրամադրութեան տակ է դրուած պետական գանձարանից տրուած 275,000 ռուբ. փախստականութիւն տալու պատերազմից փասուած Թիւրքահայ հողատէրերին, առեւտրականներին և արհեստաւորներին։

Յայտնելով այս, առաջարկում եմ վերոգրեալ դասակարգներին պատկանող բոլոր Թիւրքահայ փախստականներին, որ մի ամսուայ ընթացքում ուղարկեն ինձ հետեւեալ հարցերի պատասխանը.—

1. Անուն, հայրանուն և ազգանուն.
2. Ծննդավայր (Նահանգ, գաւառ, քաղաք).
3. Տարիք.
4. Նիւթական կարողութիւն (դրամագլուխ, հողային կալուածքների արժէք).
5. Որտեղ են հաստատուել ներկայումս։

Գործի լիակատար պատկերը ունենալու համար անհրաժեշտ եմ համարում, որ բացի վերոգրեալ դասակարգներին պատկանողներից, փախստական գրողները, ուսուցիչները և պաշտօնեաները նոյնպէս պատասխանեն առաջարկած հարցերին և յայտնեն տեղեկութիւններ անցեալում իրենց վարած պաշտօնների և ռոճկի քանակի մասին։

Փոխ-Թեմակալ Երեւանի,

Նախագահ Փախստ. Կոմիտէի՝ Խորէն Եպիսկոպոս

## ՆՈՐ ՏԱՐԵՇՐՋԱՆ

Անցեալ տարուայ դեկտեմբերի 20-ին լոյս տեսաւ «Համբաւաբերի» առաջին համարը։

Թերթի առաջին համարներում խմբագրութիւնս պարզեց ընթերցող հասարակութեան իր credo-ն (դաւանանքը) և այն նպատակները, որին կոչուած է ծառայելու «Համբաւաբերը»։

Լինել՝ առաջադիմական, անկախ եւ անկուսակցական օրգան—ահա «Համբաւաբերի» նշանաբանը, դաւանանքը։ Իսկ նպատակները բաժանուած էին երկու կարգի.

Առաջինը՝ որ «Համբաւաբերը», իբր Կովկասեան Հայոց Բարեգործական Ընկերութեան թերթ, պէտք է ձգտի ստեղծելու և պահպանելու կենդանի կապ թէ Ընկերութեան կենտրոնի և Կովկասում ցրուած իւր բազմաթիւ ճիւղերի և թէ Ընկերութեան ու հայ հասարակութեան միջև, ծանօթացնելով հասարակութեան Ընկերութեան գործունէութեան նպատակները, ծրագրերը, կարիքները և պահանջները. մի խօսքով թերթը պէտք է լինի Ընկերութեան բերանը, քանի որ Կ. Հ. Բ. Ընկերութիւնը, ընդարձակելով հետզհետէ իր գործունէութիւնը, մանաւանդ ներկայ պատերազմի շրջանում, և բազմացնելով իր ճիւղերի թիւը, արդէն դարձել է մի խոշոր ազգային հիմնարկութիւն։

Իսկ երկրորդ կարգի նպատակները՝ որ «Համբաւաբերը» գոհացնի իր ընթերցողների մտաւոր և բարոյական բազմակողմանի պահանջները, տալով նրանց մշակուած քաղաքական, հասարակական, գրական, գիտական և գեղարուեստական յօդուածներ, չը թողնելով անուշադիր և անարձագանգ և ոչ մի խոշոր երեւոյթ մեր կեանքի։

Թէ որ աստիճանի յաջողեց մեր թերթն արդարացնել իր ծրագիրը—այդ մնում է անաչառ ընթերցողների գնահատութեան, բայց որ խմբագրութիւնը անդադրում ձգտել է գործը այդ ուղղութեամբ վարելու և երբեք իրեն թոյլ չի տուել շեղուելու իր ընտրած ճանապարհից—այդ անժխտելի իրողութիւն է։

Թերթիս յաջող տարածուելը մեր հասարակութեան մէջ և այն համակրական արտայայտութիւնները, մանաւանդ գաւառներից, որ ստացուել են, խրախուսում են Կ. Հ. Բարեգործական Ընկերութեան և խմբագրութեանս շարունակել «Համբաւաբերի» հրատարակութիւնը, իբրև մի կարևոր և օգտաւէտ հասարակական, ժողովրդական օրգանի։

Մեր անցեալ տարուայ աշխատակիցների ցանկին աւելանում են առաջիկայ տարուանից նոր գրական ույժեր։

Ուստի, վստահ լինելով ընթերցող հասարակութեան համակրութեան, մեր աշխատակիցների չնչին մասնակցութեան և Ընկերութեան գաւառական ճիւղերի սրտագին աջակցութեան վրայ, խմբագրութիւնս յոյս ունի, որ «Համբաւաբերը», թեւակոխելով իր գոյութեան երկրորդ տարեշրջանը՝ աւելի մեծ թւով ընթերցողներ կունենայ և աւելի շատ կը տալածուի հասարակական լայն խաւերում։

Այս համոզմունքով և լի հաւատով մենք բաց ենք անում մեր թերթի 1917 թուի բաժանորդագրութիւնը։

Ս. Յ.

## ԶԵՄՍՏՎԱՅԻՆ ՆԱԽԱԳԻԾԸ ԵՒ ՀԱՅԵՐԸ

Յայտնի է, որ հայերը Կովկասում աւելի նուազ կենտրոնացած բնակչութիւն են կազմում, քան միւս ազգութիւնները և վարչական անյաջող բաժանման շնորհիւ գրեթէ ամենուրեք բնակչութեան փոքրամասնութիւնն են կազմում։ Այդ պատճառով զեմստվոյում, որ ընտրողական սկզբունքի վրայ է հիմնուած, գրեթէ ոչ մի տեղ հայերը չեն կարող գերիշխող լինել, իսկ շատ տեղերում էլ բոլորովին ներկայացուցչութիւն չեն ունենալ։

Ինչպէս խուսափելու է այդ անհաճոյ հետեւանքից այն վե-

# Համաշխարհային պատերազմը

*Ռուսաց Արեւմտեան ճակատ.—Ռուսաց արեւմտեան ճակատում, հիւսիսում և անտառապատ Կարպատներում հակառակորդի յարձակումները յետ են մղուել ռուսների կողմից։ Սուլտայի գետահովտում (Ռումանիա) հակառակորդի գրոհները կրկին յետ են վանուել*

*Կովկասեան ճակատ.—Կովկասեան ճակատում այս շաբաթ աչքի ընկնող դէպքեր չըպատահեցին։ Առաջապահ խըմբերի հետախուզութիւններ են տեղի ունենում միայն։*

*Ռումանական ճակատ.—Կարևոր դէպք, որ պատահեց այս ճակատում, այդ Բուխարեստի գրաւումն էր թշնամու մեծաքանակ զօրքերի կողմից։ Օլթուզ գետահովտում հակառակորդի յարձակումները յետ են մղուել։ Վալախիայում, Բուխարեստը թշնամու ձեռքն ընկնելուց յետոյ, ռուման և ռուս զօրքերը շարունակեցին նահանջել։ Դոբրուջայում հանգստութիւն է տիրում։*

*Բալկանեան ճակատ.—Թշնամին ամրակոծում է Մոնաստիրի շուրջ գտնուող դիրքերը։ Սերբիացոց դիրքերի վրայ գործուած յարձակումը թշնամուն հնարաւորութիւն տուեց գրաւել Սոկոլի մօտ դաշնակիցների ձեռքում գտնուող լեռնագագաթի մի մասը միայն։ Սէրէսից հարաւ անգլիացիները գրաւեցին թիւրքերի դիրքերը։ Մոնաստիրից հիւսիս, մանաւանդ «1050» բարձունքի շուրջը կատաղի կռիւներ են։ Վլակրար գիւղի մօտ ֆրանսացիներն առաջացել են 800 մետր և Վարդարի ափին գրաւել են բուլգարացոց 5 դիրքեր։*

—

*Յունաստանում դաշնակիցները նոր զեկուցագրով պահանջել են, որ վերականգնուի իրենց հսկողութիւնը յունական պոստի, հեռագրի և երկաթուղիների վրայ։*

—

*Լլոյդ Ջորջի դահլիճում մասնակցում են 12 ազատական, 16 ունիոնական, 3 բանուորական նախարար.*

# Պետական կեանք

## ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱ ԵՒ ՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ

*Պետական Դուման անցեալ շաբաթը մի բան անկասկած վերջնականապէս պարզեց, որ այժմ խօսքը ոչ թէ կառավարութեան վստահութեան մասին է դէպի ժողովուրդը, այլ ընդհակառակը—ժողովրդի վստահութեան մասին դէպի կառավարութիւնը։ Եւ, որ նշանակալիցն է, այս բանը առաջին անգամ զգաց և արտայայտեց նաև Պետական Խորհուրդը՝ Վերջինիս ազդեցիկ անդամները շեշտեցին, որ Պետական Դումայում դատապարտուած կառավարական կարգը—սիստեմը դատապարտում են և իրենք։ Իսկ նրանցից մէկը նոյն իսկ քաջութիւն ունեցաւ ահազանգը տալու—«Հայրենիքը վտանգի մէջ է» և ներքուստ։*

*Սակայն այս ամենը լոկ թեթև քննադատութեան վաղանցիկ խօսքի արժէք ունեցաւ։ Կառավարութեան դեկլարացիայի—գործունէութեան ծրագրի յայտարարութեան քննադատութեամբ մի անգամ ևս կրկնուեց «Ոսկէ ձկնիկի» միշտ նոր պատմութիւնը. մեծամեծ պահանջներից ու խոստումներից յետոյ ռուս հասարակութիւնը կանգնած է նորէն նոյն «կոտրած տաշտի» առաջ։*

*Պուրիշկևիչից յետոյ Միլիւկովը ասաց առաջադիմական բլոկի անունից. «Կառավարութիւնը համաձայն է աշխատել Դումայի հետ, բայց այդ աշխատանքը սահմանափակել է միայն օրէնսդրական գործունէութեամբ, իսկ բլոկի ծրագիրը պահանջում է համաձայնեցնել կառավարութեան և Դումայի գործունէութիւնը նաև վարչութեան հարցում։ Կառավարութեան յայտարարութեան մէջ ոչ մի ծրագիր չկայ... Մամուլի նկատմամբ Տրեպովի խոստումները հեգնանքի պէս են հնչում... Տրեպովը կոչ արեց աջակցել հասարակական կազմակերպութիւններին։ Իսկ իրօք միջոցներ են ձեռք առնում այդ կազմակերպութիւնների դէմ։ Տրեպովը կարող է խոստանալ, որ այդ կփոխուի... Կառավարութիւնը օրէնսդրական հարցում մասնակի զիջումներ է անում, բայց այդ զիջումները հակասում են նրա հիմնական սկզբունքներին։ Այդ հակասութիւնը արտայայտւում է նրա առաջարկած օրէնսդրական ծրագրի քաոսային բնութեամբ։ Կառավարութեան զիջումները բնականաբար անկեղծ չեն և անյուսալի են։ Այդպիսի կառավարութեան հետ մենք աշխատել չենք կարող, որովհետև վստահ չենք, որ նրա հետ երկիրը կըհասցնենք յաղթանակի։ ...Այս կերպով ներկայ կառավարութիւնը չէ կարող վճռել և ոչ մի հարց, որ առաջադրուած է մեծ պատերազմով։ Միակ ելքն է—ստանալ մի կառավարութիւն, որ վայելէր երկրի վստահութիւնը»։*

*Միլիւկովից յետոյ խօսում է նորից Տրեպովը և ի միջի այլոց ասում. «Մինիստրական յայտարարութիւնը հետևանք չէ որև է զիջումների, այլ կառավարութեան հաստատ համոզումների անկեղծ արտայայտութիւնն է»։ Այսու միանգամայն սառն ջուր է մաղւում Դումայի մեծամասնութեան վրայ։ Եւ գուցէ այսու աւելի խրախուսուած Մարկով II Դումայի նախագահի հասցէին այն էլ ռուսական «Պարլամենտում» չլսուած՝ հայհոյանքներ է թոյլ տալիս և ահագին աղմուկ առաջ բերում։ Նախագահ Ռոձեանկոն հրաժարւում է նախագահութիւնից։ Նրան փոխարինում է օգնականը՝ Կոմս Բոբրինսկին։*

*Լեհական կոլոյի ներկայացուցիչը յայտնում է, որ լեհ ժողովուրդի դիմադրական ուժերը թուլանում են կառավարութեան յայտարարութեան անորոշ բովանդակութեամբ. մինչդեռ լեհ ժողովուրդը յոյս ունի, որ «վերածնուած Լեհաստանը իսկապէս կըլինի Եւրոպայի ապագայ հաւասարակշռութեան հիմքերից մէկը»։*

*Ապա Ռժեւսկին կարդում է մի բանաձև առաջադիմականների կողմից, որով յայտնում է, թէ այս կառավարութիւնը անկարող է տանել մեզ դէպի յաղթութիւն, որովհետև «ի վիճակի չէ կռուելու գաղտնի անպատասխանատու ազդեցութիւնների դէմ, ուստի և անվստահութիւն է յայտնում այդ կառավարութեան»։*

*Նոյնը, աւելի որոշ պահանջում է Շիդլովսկին. «1) Մութ, անպատասխանատու անձերի ազդեցութիւնը պէտք է չէզոքացուի. 2) Պէտք է Դումայի վստահութիւնը վայելող միութեան դահլիճ կազմել»։*

*Մեծամասնութեամբ ընդունւում է Շիդլովսկու բանաձևը։ Նոյեմբերի 24-ի նիստում քննւում է պարենաւորման հարցը։ Բոլոր ճառախօսներն էլ գտնում են, որ պարենաւորումը Ռուսաստանի ամենաէական ու կարևոր հարցերից է, որից և կախուած է պատերազմի բախտը։ Թանգութիւնը մթերքների պակասութեան արդիւնք չէ. Շինգարևը յիշեցնում է թշնամու դառն հեգնանքը՝ թէ—«յայտնի՞ է ձեզ մի երկիր, ուր ամեն ինչ կայ և ոչինչ չկայ»։ Պատճառը էլի կառավարութեան ապիկարութիւնն է. «Պարենաւորման հարցը, ասում է Շելգունովը, կարող է իրագործուել միայն միացեալ իշխանութեամբ, որ յենուելու է երկրի վստահութեան վրայ և պատասխանատու է լինելու Դումայի առաջ»։ «Երկիրը պատրաստ է զոհողութիւններ անելու, բայց ուզում է գիտենալ՝ թէ ինչի՞ համար։ Ռուսաստանը դեռ կարող է փրկուել և կենսամթերքների հարցը կարող է կանոնաւորուել», եթէ Դումայի հետ աշխատող և վստահելի կառավարութիւն լինի. «ժողովուրդը կը գնայ միայն այն կառավարութեան յետևից, որ վայելում է ժողովրդի վստահութիւնը» (Ռոդիչև)։*

*Նախարարութեան յայտարարութեան վերաբերեալ Պետական Խորհրդում ձայների մեծամասնութեամբ անցնում է կենտրոնի հետեւեալ բանաձևը. «Գտնելով, որ Ռուսաստանի ներկայ*

պատմական ժամին հայրենիքը հրամայաբար պահանջում է—լարել ժողովրդական ամբողջ ուժը թշնամու վրայ վերջնական յաղթութիւն տանելու համար և կառավարութեան ու օրէնսդրական հաստատութիւնների համերաշխ գործակցութիւնը, և որ աշխատանքի այդպիսի համաձայնութիւնը ապահովելու համար անհրաժեշտ են. առաջին՝ պետական գործերի վրայ ազդեցութիւնից բոլորովին հեռացնել ծածուկ ու անպատասխանատու անձերին, և երկրորդ՝ կազմել աշխատանքի ընդունակ մի կառավարութիւն, որ իրապէս համերաշխ լինի, միացած որոշ ծրագրով, յենուած երկրի վստահութեան ու համակրութեան վրայ, և այսու իսկ օրէնսդրական հիմնարկութիւնների հետ գործակցութեան ընդունակ, Խորհուրդն անցնում է հերթական խնդիրներին»։

# Ներքին տեսութիւն

## ԿՈՉ

ՆՈՐԻՆ ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ՄԵԾՈՒԹԵԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ հովանաւորութեան տակ գտնուած պատերազմում վիրաւորուած զինուորներին և նրանց ընտանիքներին ամենուրեք օգնութիւն հասնող Ընկերութեան։

«Ինչպէս օգնութեան հրաւիրող զանգահարութիւն հնչում են մեր օրերում այս կարճ խօսքերը.—«ամենուրեք օգնութիւն պատերազմում վիրաւորուած զինուորներին և նրանց ընտանիքներին»։

Քանի հարիւր հազար մարդ է այս պատերազմը հաշմանդամ դարձրել և դեռ էլի կը դարձնի, և նրանց հետ միասին վիշտ ու կարիք պիտի զգան նրանց ընտանիքները, որոնք առաջ նրանց աշխատանքով կերակրւում էին։

Պէտք է միթէ պատերազմում հաշմանդամ դարձած զինուորի կարիքի մասին շատ բառեր շռայլել։ Թող ամեն մի անհատ միայն պատկերացնի իրեն ընդհանուր-ռուսական այս կսկիծը։ Եւ ակամայ ձեռքը ինքնիրեն կը պարզուի իւրովանն տուրքի հետ։

Այդ տանջուածների ետեւում, նրանց փոխարէն ձեռքը ձեզ պարզելով կանգնած է Ինքը Քրիստոս՝ վիրաւոր և փշեայ պսակը գլխին։

Յանուն Նրա և Հայրենիքի նախանձաւոր հանդիսացէք, ուղղափառներ։

---

## ԿՈՎԿԱՍԻ ՆԱԽՈՐԴ ՓՈԽԱՐՔԱՅ ԿՈՄՍ ՎԱՐԱՆՑՈՎ-ԴԱՇԿՈՎԻ ՅՈՒՇԱԳՐԻՑ*)

### Ռուսական գաղթաւորումը (колонизація)

Անդրկովկասը ռուս գաղթականներով բնակեցնելու և անապատները ոռոգելու ընթացքի մասին պէտք է ասել, որ ներկայումս Մուղանի անապատում 70 հազար դեսեատին ոռոգուող տարածութեան վրայ կայ 29 շէն՝ 20 հազար ռուս գաղթական բնակչով։ Անապատի ապագայ ոռոգումը ապահովուած է այնտեղ կատարուող աշխատանքի շնորհիւ, որի համար յատկացուած է $4^{1}/_{2}$ միլիոն ռուբլի. այդ հանգամանքը ինձ հնարաւորութիւն կը տայ երկու-երեք տարուց յետոյ այնտեղ բնակեցնել 100 հազար ռուս։ Միլի անապատը ոռոգելու տեխնիկական նախագիծը արդէն մշակուած է (160 հազար դեսեատին). Նախագծուած է նոյնպէս և Շիրուանի անապատի ոռոգումը, ուր մօտ 33 հազար դեսեատին տարածութիւն առաջիկայ տարին ջրովի կը դարձուի, չհաշուելով ոռոգման ընդհանուր մակարդակը հաստատելուն։ Ներկայումս Անդրկովկասի անապատները ոռոգելու և այդ տեղերը ռուս տարրով բնակեցնելու գործը, դրա հետ միասին և բամբակագործութիւնը—պէտք է ապահովուած համարել։ Այլեւս կարիք չկայ ապացուցանելու այդ գործի պետական նշանակութիւնը, որը ստիպուած էի անել իմ նշանակուելու սկզբի տարիները իմ նախորդի անյաջող փորձերի հետեւանքով, որի երախտիքը սակայն շատ մեծ է, որպէս «նախաձեռնութիւն» երկրի համար արժէքաւոր նոր գործին։ Դժբախտաբար վատ կազմակերպած գաղթականական գործերի և գաղթավայրեր ընտրելու այդ անյաջող փորձերի հետեւանքով, որ արտագաղթ առաջ բերեց, մեղադրանք բարդեցին ինձ վրայ, որ իբր թէ ես չեմ համակրում ռուս գաղթականական գործը, և վարկաբեկելով գործը, արգելք եղան ինձ բաւականաչափ վարկ ստանալու։ Ներկայումս գործի այդ մութ կողմերը արդէն անցել են, իսկ գաղթականական իմ ծրագիրը կատարեալ պաշտպանութիւն է գտնում կենտրոնական Կառավարութեան կողմից և օրէնսդրական հիմնարկութիւններում։ Գործը այժմ լաւ հիմքերի վրայ է դրուած և արագ առաջ կը գնայ յօգուտ Կովկասի և Ռուսաստանի։ Միայն թէ չպէտք է գործը փչացնել յաջողութիւնից գրաւուելով, եւ նկատի ունելով Ռուսաստանի ներքին նահանգներից բնակիչներին գաղթեցնել՝ վերակել բնակեցնել ռուս տարրով այնպիսի վայրեր, որոնք արդէն խիտ բնակեցուած են Կովկասի կենտրոնական մասերի տեղական բնակչութեամբ, ուր եղած ազատ հողերի չնչին մասը անհրաժեշտ է հենց այդ բնակիչների համար։ Պէտք է մի անգամ ընդմիշտ իմանալ, որ Կովկասում ռուս գաղթականութեան համար կարելի է և պէտք է օգտագործել միայն այժմեան ամայի անապատները, որոնք ապագայում պէտք է ոռոգուին, և մասամբ Սև-ծովեան ծովեզրը։ Պէտք է իմանալ, որ Պետութեան կենտրոնական նահանգների խիտ բնակչութեան հոսանքը բերելու համար՝ տեղական գաղթականական հիմնադրամը (ֆոնդ) միանգամայն շատ չնչին է։ Մի խօսքով խնդիրը այն է, որ երկիրը հաստատուն գաղթավայր դարձուի, եւ ոչ թէ այնտեղ ցրուած ժողովրդի անհող խմբեր, որոնք կողմնակի աւելորդ հողեր են փնտռում. որպիսի հիմքերի վրայ դրուած է առայժմ գաղթականական գործը Սիբիրում։

### Ժողովրդական կրթութիւնը

Անկարելի է երկրի արդիւնաբերութիւնը բարձրացնել առանց բնակչութեան մտաւոր հորիզոնը լայնացնելու. ուստի Կովկասը կուլտուրապէս բարձրացնելու հոգացողութեան գործում նշանաւոր տեղ պէտք է յատկացնել ժողովրդական կրթութեանը։ Կովկաս ծայրագաւառում ռուս դպրոցի քաղաքական նշանակութեան մասին՝ որպէս ռուս պետականութեան ուղեցոյցի, ես արդէն վերևում ասել եմ մահմեդականների կրթութեան առիթով, և ինձ թւում է, որ այնքան անժխտելի է դրա նշանակութիւնը, որ կարիք չկայ այդ ապացուցանելու։ Ըստ պարզաբանուած նկատառումների ութը տարի երկիրը կառավարելու ընթացքում առանձնապէս ջանք եմ թափել ժողովրդական կրթութիւնը տարածելու։

Փոխարքայութեան գոյութեան ընթացքում տարրական դպրոցները աւելացել են աւելի քան $30^{0}/_{0}$-ով (3,037 դպրոց), որոնց մէջ սովորողներինը՝ գրեթէ $50^{0}/_{0}$-ով (302,664 հոգի). հանրակրթական ստորին դպրոցների թիւը 67-ից հասել է 107-ի, ուր սովորում են 20,000 աշակերտ. միջնակարգ դպրոցների թիւը 202-ից հասել է 263-ի, իսկ նրանցում սովորողների թիւը 25 հազարից բարձրացել է աւելի քան 42 հազար հոգու. ուսուցիչներ պատրաստելու մասնագիտական դպրոցների թիւը 14-ից 24-ի է հասել, ուր նախապատրաստական կրթութիւն են ստանում 1,100 երկու սեռի անձինք։ Ճարտարարուեստի (промышленность) դպրոցների թիւը քիչ է աւելացել. այդպիսի դպրոցներ երկրում կայ ընդամենը 29՝ երեք հազար սովորողներով. սակայն ճարտարա-

*) Տես «Համբաւաբեր» № 47։

ռուսաց կրթութեանը ես ամենալուրջ ուշադրութիւն եմ դարձնում՝ օրինական (Նորմալ) դպրոցներին կից բանալով արհեստագիտական և գիւղատնտեսական-արհեստագիտական բաժանմունքներ. առայժմ այդ տեսակ բաժանմունքներ բացուած են միայն 56, քանի որ միջոցների պակասութեան պատճառով դրանց բացումը յապաղում է, որովհետև ընդհանրապէս բովանդակ Պետութեան համար այդ մասին յատկացրած գումարը սակաւ է։ Վերջապէս առևտրական դպրոցների թիւը ութը տարուան ընթացքում 7-ից աճել է մինչև 30, իսկ սովորողների թիւը 1,600-ից մինչև 4,200։ Ես հաստատ համոզուած եմ, որ եթէ ռուս դպրոցում առաջին տարին աշակերտների մայրենի լեզուով լինի դասաւանդումը և ծրագրի մէջ մուծուի արհեստներ և գիւղատնտեսական գիտելիքներ և ծանօթութիւններ՝ ռուս կուլտուրան Կովկասում մտցնելու յաջողութեան ամենալաւ առհաւատչեան կը լինի։ **Այդ կողմից հետաքրքրական է հետեւեալ երեւոյթը, որ նկատւում է հայ գիւղերում. հենց որ բացւում են ռուսական՝ այսպէս կոչուած Մինիստրական տիպի դպրոցներ,—տեղական հայ եկեղեցական գրագիտական դպրոցը փակւում է, որովհետեւ չեն ցանկանում այնտեղ սովորել։ Այդ երեւոյթը ես համարում եմ մի կողմից տեղական դպրոցների ազգայնական միտումների դէմ կռուելու ամենաուղիղ միջոցը, իսկ միւս կողմից՝ որ այդ միտումները բոլորովին բացակայում են ժողովրդական խաւերում։**

Ի նկատի առնելով այն յաջողութիւնը, որ ունի ռուս դըպրոցը, և նրա նշանակութիւնը երկրի համար՝ իբրև ռուս կուլտուրայի ուղեցոյց, երկիրը կառավարելու ամբողջ ժամանակամիջոցում ես թախանձանօք միջնորդել եմ, որ Կովկասում բարձրագոյն դպրոց բացուի. այժմ այդ հարցը կարելի է վճռուած համարել, այն է՝ հիմնել Թիֆլիսում Բազմարուեստեան ճեմարան հետեւեալ մասնաճիւղերով—գիւղատնտեսական, մեքենագիտական, քիմիական և տնտեսագիտական։ Ներկայումս ճեմարանի կառուցումը համարեա ապահովուած է նուիրաբերած գումարներով. մշակուած են հիմունքները, կազմը և շինութեան տեխնիկական մակարդակը։ Ես մտադիր եմ մօտիկ ժամանակում Նախարարների Խորհրդի վաւերացմանը ներկայացնել յիշեալ դպրոցի հիմնադրութեան մասին համապատասխան օրինագիծ։

Ռուս դպրոցի նկատելի յառաջադիմութեան առիթով չեմ կարող չը գրել, որ 1907 թուին ես առիթ եմ ունեցել ասելու, թէ երբ Փոխարքայութիւնը վերացուեց և լուսաւորութեան գործը կառավարում էին Պետերբուրգից, **պահանջ էր դրուել, որ այդ դպրոցներում դասաւանդութիւնը լինի բացառապէս ռուսերէն՝ երեխայի դպրոց մտնելու հենց առաջին օրից։** Ազգաբնակչութեան դըժգոհութիւնը դէպի դպրոցները արտայայտուեց նրանով, որ սովորողների թիւը պակասեց, մի քանի հին դպրոցներ փակուեցին և նորերի բացմանն էլ արգելքներ յարուցուեցին։ Այժմ այդ դժգոհութիւնը բոլորովին չքացել է, երբ ես կարգադրեցի ժողովրդական դպրոցներում վերսկսել ուսման այն ծրագիրը, որ հաստատել է Կովկասի նախորդ Փոխարքայ Մեծ Իշխան Միխայէլ Նիկոլաեւիչը, ըստ որի դասաւանդութիւնը դպրոցական առաջին տարում կատարւում է մայրենի լեզուով, նմանապէս ծրագրի մէջ մտցնելով գործնական գիտելիքներ, որոնք անհրաժեշտ են գիւղական կեանքում։ Այս հանգամանքը պարզ ցոյց է տալիս, թէ որքան դժուար է—անտեղեակ լինելով տեղական կարիքներին—Պետերբուրգից կառավարել Կովկասի լուսաւորութեան գործը, ուր չի կարելի գործադրել ընդհանուր ձևը։

Տ.

(Վ ե ր ջ)

## ԿԱՐՍԻ ԵՐԿՐԱՇՐՋԱՆԻ ՀԱՅ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ԱՐԴԻ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ

Հայ Կենտրոնական Կոմիտէի (յանձնաժողովի) լիազօր փաստաբան պ. Դր. Ջամոյեանը մատուցել է Յանձնաժողովին հետևեալ զեկուցումը.

Կարսի շրջանում ապաստան գտած փախստականների վիճակը նոյեմբերի 1-ից սկսած սաստիկ վատանում է։ Այս տարուայ սեպտեմբերի սկզբին փախստականներին օգնութիւն ցոյց տուող Կարսի երկրաշրջանային (область) յանձնաժողովի նիստում զինուորական նահանգապետը յայտնեց, որ Առանձին Խորհրդակցութեան կարգադրէքի համաձայն փախստականներն այսուհետև կստանան պետական նպաստաբաժնի (паекъ) կէսը։ Ես յայտնեցի պատճառաբանուած բողոք, թէ «Առանձին Խորհրդակցութեան որոշումը պետական նպաստաբաժինը նուազեցնելու չէ կարող կիրարկուել տաճկահայ փախստականների վերաբերմամբ, որովհետև այս փախստականներն են կանայք, երեխաներ և ծերեր. գաղտնիք չէ, որ բոլոր տղամարդիկ մինչև 17 տարեկանը սրախողխող են արուած։ Այսպիսով նպաստաբաժնից զրկելը և կամ կրճատումը համազօր է սովի մատնելու նրանց ընտանիքներին, որոնք չունին աշխատութեան ունակ տղամարդիկ։ Տաճկահայ փախստականները խիստ տարբեր են Լեհաստանի և Լիտվայի փախստականներից, ուստի Առանձին Խորհրդակցութեան վերոյիշեալ որոշման անխտիր կիրառումը և Կովկասի փախստականների համար՝ անարդար է և խիստ»։

2. Բասենի վիճակում (районъ) այժմ ապրում են առնուազն 14,000 փախստական, որոնցից պետական նպաստաբաժին ստանում են մօտ 3,000 հոգի։ Սրանց՝ ըստ կարգադրէքի գեներալ Թամամշեանի՝ հոկտեմբերին տրուած է 55,000 ռ. ըստ 1914 թուականի կազմուած ցուցակագրութեան։

Բազմաթիւ նպաստակարօտ փախստականներ չստացան պետական նպաստ, քանի որ ցուցակագրուած չէին կամ զանցառութեամբ, կամ որովհետև 1914 թուականից յետոյ էին Բասէն եկել։

Սրանց վիճակը դառն է։ Անհրաժեշտ է անմիջական օգնութիւն։ Սրանց խեղճութեան խստութիւնը կարելի է սակաւ ինչ մեղմացնել, եթէ Հ. Կենտ. Կոմիտէն գեներալ Թամամշեանի համաձայնութեամբ մնացեալ 25,000 ռ. նպաստը տայ կարօտ փախստականներին և մուծի նրանց ցուցակ, որպէսզի սրանց էլ ընդհանուր հիմունքով պետական նպաստ տրուի։

3. Պետական նպաստաբաժինը Կարսի երկրաշրջանում փախստականներին բաշխւում է վարչութիւնը Կ. Հ. Բ. Ը.-թեան ներկայացուցիչների մասնակցութեամբ։

Կ. Հ. Բ. Ը.-թեան Կարսի ճիւղը միջոցներ չունենալով իւր մասնակից ներկայացուցիչներին վարկատրելու, վարչութիւնը յաճախ դրամը բաշխում է առանց ճիւղի ներկայացուցիչների, որով տեղ-տեղ թիւրիմացութիւններ են ծագում ի վնաս փախստականների։

Կ. Հ. Բ. Ը.-թեան արգասաւոր գործունէութեան և փախստականներից շատերին ամեն կողմից լաւ ծառայելու համար՝ անհրաժեշտ է վարձատրել երկու բանգէտ (интеллигентъ) և բարեխիղճ աշխատակցի, որոնց ուղարկէր Հ. Կենտ. Կոմիտէտը, բայց Կ. Հ. Բ. Ը.-թեան Կարսի ճիւղին ենթարկելով։

4. Հ. Կենտ. Կոմիտէի առաջադրութիւնն ստանալուց յետոյ՝ Կարսի երկրաշրջանում բացուելիք դպրոցներ փախստականների երեխաների համար և Բ. Ը.-թեան վարչութեան կից կազմուած է դպրոցական մասնաժողով (комиссія) հմուտ և եռանդուն անձերից։

Այս մասնաժողովը լրջութեամբ կպել է գործի. մշակել է ծրագիր դպրոցական ցանցի, ձեռք է բերել անհրաժեշտ առարկաներ, որոնք անհրաժեշտ են դպրոցները կահաւորելու, վարձել է շէնքեր, ուսուցչական մարմին են։

Աշխատանքի բարկ միջոցին մասնաժողովը դժբախտաբար

Հ. Կենտ. Կոմիտէից առաջադրութիւն ստացաւ դադարեցնել դպրոցներ բանալու գործունէութիւնը մինչև առանձին տնօրինութիւն: Կանգ առաւ անհապին կարևորութիւն ունեցող աշխատանքը: Հազարից աւելի փախստական երեխաներ մնում են փողոցներում. խնդրում եմ, եթէ չկան լուրջ արգելքներ, առաջադրել դպրոցական մասնաժողովին վերսկսելու իր կուլտուրական աշխատանքը, հաստատելով նրա ներկայացրած դպրոցական նախահաշիւը:

5. Այս նոյեմբերին շրջելով փախստականների տեղաւորուած շրջանները պարզ տեսայ, որ նրանք չունին առաջնակարգ անհրաժեշտ առարկաներ. չկայ ալիւր, նաւթ, շաքար, սապոն են: Սաստիկ անհրաժեշտ է փութալ բանալու պահեստներ Կարսում և Տիկորում և ուղարկել վերև ցոյց տուած առարկաները:

Գր. Ջամոյեան

---

# ՄԱՀԱՑՈՒՑԱԿ

## † ԱԻԵՏԻՔ ԵՂԵԿԵԱՆ

Նոյեմբ. 26-ին Թիֆլիսում վախճանուեց վաղեմի հասարակական գործիչ Ա. Եղեկեան:

Նա ծնուել է 1849 թ. Ալէքսանդրապոլում: Տասը տարեկան հասակում նրան տարել են Պարիզ և յանձնել Մուրադ-Ռափայէլեան վարժարան, որի Վենետիկ տեղափոխուելուց յետոյ անցնում է այնտեղ և շարունակում ուսման ընթացքը:

28 տարեկան հասակում նա վերադառնում է հայրենիք՝ գիտութեան զէնքերով զինուած: Նրանից յետոյ նա նուիրւում է ուսուցչութեան նախ՝ Ալէքսանդրապոլի Արղութեան դպրոցում և ապա Թիֆլիսի Ներսիսեան դպրանոցում: 1884—1892 թ. նա եղաւ Կ. Հ. Բ. Նորակազմ Ընկերութեան քարտուղար և առանձին եռանդով ու աշխատասիրութեամբ տարաւ այդ գործը. նրա օրով որոշ պարկ ստացան Ընկերութեան գործերն ու որոշումները: Թիֆլիսում նա ծանօթանում է հայոց գրական և հասարակական շրջաններին և եռանդագին մասնակցում:

Մակար Կաթողիկոսի մահուանից յետոյ Եղեկեանը գնում է էջմիածին, վարելու համար Ճեմարանի ուսուցչութեան և Սինոդի քարտուղարութեան պաշտօնները: 1895-ին նա անցնում է Բաքու և մտնում ծառայութեան նաւթի Արդիւնաբերական Խորհուրդի մէջ և այնտեղից տեղափոխւում է Ախալցխա աւագ-ուսուցչի պաշտօնով և 1908-ին Թիֆլիս տեղափոխուելով, ընդմիշտ հաստատւում է այնտեղ, ուր և վախճանուեց 67 տարեկան հասակում:

Հանգուցեալը հմուտ էր բացի հայերէնից, եւրոպական լեզուներից՝ ֆրանսերէնին, անգլիերէնին, սպաներէնին, գերմաներէնին և իտալերէնին, որոնց մատենագրութիւններից թարգմանել է մի քանի կլասիկ գրուածքներ:

Այժմ անտիպ թարգմանած ունի, որքան մեզ յայտնի է, Արիոստոյի «Մոլեգին Ռոլանդ» ոտանաւոր, «Համլէտ», երկուսն էլ բնագրից, են:

Հանգուցեալ Եղեկեանը քաջ հմուտ էր հայի անցեալին և ներկային. երիտասարդի յատուկ եռանդով գործում էր և մաքառում ազգային շահերի համար: Յարգանք վաստակաւոր գործչի աճիւնին:

---

## † ՍԵԴՐԱՔ ԹԱՌԱՅԵԱՆ

Վերջացաւ կեանքի, մեծ Ողբերգութեան «փոքրիկ», բայց դարձեալ ծանր «ողբերգութիւններից» մէկը:

Մեռաւ Սեդրաք Թառայեանը:

Այո, մի ինքնօրինակ ողբերգութիւն էր և այս դժբախտ մարդու կեանքը: Եւ այդ ողբերգութիւնը այնքան էր ողբերգական, որքան փոքր ու թոյլ էին նրա ուժերը, և որքան մեծ էր նրա «խաչը», որքան մեծ, համամարդկային էին իր գաղափարները մի կողմից, և որքան աննպաստ էր այն միջավայրը, ուր նա ապրում էր:

Նրա կեանքը ողբերգական էր դառնում և նրանով, որ նա գաղափարի, չափազանց ընդհանուր ու վերացական գաղափարի մոլեռանդ մարտիրոսներից, անուղղելի ուտոպականներից, երազկողներից էր:

Բոլոր երազկողների նման՝ նա ռոմանտիկ էր: Մարդկութեան երջանկութիւնը, «ոսկեդարը» որոնում էր պատմութիւնից դուրս: Արհամարհում էր ժամանակն ու տարածութիւնը և կեանքի պայմանները:

Երազում էր մի երջանիկ, ազատ մարդկութիւն, միացած «ընկերական»—եղբայրական սիրով, ընդունակ ըմբռնելու ու ստեղծագործելու:

Հաւատում էր մի վրդովեցուցիչ հաստատակամութեամբ, որ մի օր, մի գեղեցիկ օր մարդիկ կըմբռնեն ճշմարտութիւնը, դարձի կըգան և բարոյականութեան ու ընկերական սիրոյ թագաւորութիւնը կհաստատեն աշխարհիս վրայ:

Հաւատում էր և... անկեղծ էր:

Եւ այդ անկեղծութիւնն ու գաղափարականութիւնն էր նրա յարաբերական մեծութիւնը:

Նա մեծ հանճար չէր, «մեծ մարդ» չէր. բայց նա մարդ էր, մաքուր, շիտակ, գաղափարական:

Նա շատ էր «փոքր», որպէսզի կարելի լինէր մեր հանրածանօթ «կուսակցական» արշինով չափել ու ...«մեծացնել» նրան:

Բայց այդ աննշան գոյութեան մէջ իւրատեսակ մեծութիւն կար, որին շատ «մեծեր» ու հսկաներ հասնել չեն կարող:

Վերջացաւ այդ փոքրածաւալ, համառօտ կեանքը, որ իմ աչքում միշտ գրսի մեծ կեանքի կենդանի հերքումն էր ներկայանում:

Սեդրաք Թառայեանը գաղափարի ու իրականութեան մշտընջենական ու ճակատագրական բախման և կեանքի անհեթեթութեան փաստերից մէկն էր:

«Մեր ուժերից վեր» ուժերի դէմ պայքարի զոհերից մէկն էր նա—միշտ սիրելի ու յարգելի իր գաղափարական շիտակութեամբ ու անկեղծութեամբ:

Մարդութեան ցնորական փրկութեան համար՝ իր համար դժոխք դարձրած կեանքից փրկուեց նա:

«Էսկուլապին մի զոհ մատուցէք»—ասել են նրա սիրած ուսուցիչները—Սոկրատ և Տոլստոյ:

Նա «փրկուեց» այս կեանքից և «հայ կեանքից»:

Վ. Խ.

---

# ԳԱՒԱՌ

ՕՐԴԱԿԼՈՒ (Դարաչիչագ-Ծաղկաձորի վիճակ), 12 նոյեմբերի.—Ցաւօք սրտի յայտնում եմ, որ Կովկասում տակաւին հանդիպում եմ խալիֆայական դպրոցների շատ գիւղերում:

Արդեօք չէ՞ր կարգադրուած, մինչև այսօր վերջ տալ այդ Տէր Թոդիկեան դպրոցներին և նրանց տեղ շինել ծխական դպրոցներ. ինչպէս քանդել կռատուն և հաստատել եկեղեցի: Այս խալիֆայական դպրոցները բազմաթիւ էին թիւրքահայերի մէջ, բայց մէկ հրահանգով վերջ տրուեցաւ և բացուեցան ծխական դպրոցներ, որոնց ուսուցիչները միջնակարգ դպրոցների վկայականով միմիայն կարող էին պաշտօնավարել: Իսկ այսօր Կովկասի մի քանի գիւղերում դեռ մնում են. օրինակ Օրդակլու գիւղը

տասը տարի շարունակ ունի ծխական դպրոց և ամեն տարի ծխական դպրոցին կից մի քանի խալիֆայական դպրոցներ։ Բայց ինչ են սովորում այդ դպրոցը յաճախող մատաղ սերունդները. բացատրեմ մի քանի խօսքով։ Դպրոցի վերին մասում, որ օդայ է կոչւում, չորս կողմը մորթերի վրայ ծալապատիկ նստած են 50—60 երեխայ. ամեն մէկի ձեռքը մի մի քերական բռնած նայում են վրան. օրւայ 3/4 մասը անցնում են սերտողութեամբ։ Խալիֆան, որ մի երկար ճիպոտ ձեռքին նստած է օջախի կրակի մօտ, մերթընդմերթ զարկում է ճիպոտով որևէ աշակերտին, որը երկար ծալապատիկ նստելուց ուզում է խաղալ։ Այսպէս երեխաները անց են կացնում մօտ 8 ժամ և ապա թողնւում տուն։ Երբ երեխաները խալիֆայի օդայից դուրս են գալիս, հազիւ հազ կարողանում են քայլել, ոտքերնին թուլացած երկար նստելուց, նորից են ուզում նստել։ Այս էլ խոստովանւում եմ, որ ծխական դպրոցների մատեանի մէջ գրուած է, որ գիւղի հոգաբարձութիւնը, թեմական տեսուչ պ. Տիգրան Ռասմաճեանը և գործակալ Եղիշէ վարդապետը ունեցել են մի ընդհանուր ժողով, որտեղ որոշել են վերջ տալ այդ խալիֆայական դպրոցներին, բայց մեր պարոնների որոշումը մնացել է որոշում այս հինգ տարի։ Այս ձևի կըրթութեան տակ են Դարաչիչագի շրջանի մի քանի գիւղի մատաղ երեխաները. ինչպիսին է Գոմաձոր, Զոչը և այլն. կան գիւղեր, ուր ժողովուրդը դեռ գերադասում է խալիֆային, որովհետև ուսուցիչը չի ծառայում գիւղացուն, այլ մատաղ սերնդին, իսկ խալիֆան ծառայում է գիւղացու քմահաճոյքներին։

Զանանք վերջ տալ այս տեսակ դպրոցներին։

Վահան Աբրահամեան

---

ՆԵՐՔԻՆ-ՇԷՆ (Գանձակ), 15 նոյեմբ.—Սա գտնւում է Գանձակից 7 մղոն հեռու դէպի հարաւ-արևելք՝ Գեօլ-Պուլաղ կոչուած լեռնաշղթայի ստորոտում. օդը շատ առողջարար է. որքան որ բնական աղբիւրներ չկան՝ բայց և այնպէս Մռաւ կոչուած լեռների աղբիւրների ջրերից կազմուած մի յստակ առու է բըղխում, որի ջրից գործածում են խմելու, ոռոգում են նաև գիւղի այգիները, արտերը. միևնոյն ժամանակ տալիս է բաւարարութիւն մի քանի գիւղերի ևս։

Գիւղի շէնքերից մի քանիսը կռնաձև են, մի քանիսը մի յարկանի և երբեմն երկյարկանի, սենեակները փոքր են և բնակիչները 200 տուն հայ են, որոնք պարապում են երկրագործութեամբ և այգեգործութեամբ։

Երկրագործութիւնը վերին աստիճանի յետ է մնացել, որովհետև դեռ մինչև օրս գործ են ածում նախահայրերից մնացած կոպիտ ձևով շինուած գործիքներ. եթէ այսպէս շարունակուի, երբէք չպիտի յառաջադիմէ երկրագործութիւնը, այլ երթալով յետ պիտի մնայ։ Գիւղը ունի մի պետական դպրոց, ուր դաստիարակւում են 70-էն աւելի աշակերտ-աշակերտուհիներ։ Ռուսերէնն աւանդւում է ռուս մի վարժուհի. իսկ հայերէն կրօնի դասը՝ մի քահանայ...։

Այգիների բերքը այս տարի չափէն աւելի առատ էր, բայց աշխատող ձեռքերի պակասութեան պատճառաւ որևէ նշանակութիւն չունեցաւ, որովհետև տղամարդին պատկանած գործերում կինարմատն է, որ ակամայ աշխատում է, ուստի և չկարողացան բերքերի գոնէ 1/2 քաղել և լցնել իր շտեմարանները։

Կենսամթերքների սղութիւնը դարձել է առասպելական, չը տեսնուած և չըլսուած։ Երկու ամիս առաջ ցորենի պութը ծախւում էր $2^1/_2$—3 ռ., իսկ հիմա ծախւում է 5—6 ռուբլով, այն էլ չի ճարւում. քարիւղի փութը ծախւում է 15 կոպէկով, բրինձ 35 կոպէկ. իսկ իւղի և շաքարի երես չի տեսնւում. այսպէս և միւս կենսամթերքները։

Յիշեալ գիւղում ապրում են 150-ից աւելի գաղթական, մեծ մասը վանեցի, մնացածը՝ փրխուսեցի են։ Գաղթականական դպրոցը շարունակւում է կանոնաւոր, շնորհիւ գաղթ. գլխաւոր լիազոր պ. Ա. Բորեանին, որը պատրաստ է միշտ առանց վայրկեան ուշացնելու հոգալ դպրոցի կարիքները։ Աշակերտները ճարպիկ են ու աչալուրջ, սակայն դժբախտաբար ոտաբոբիկ և մերկ։

X.

---

ԱՇՏԱՐԱԿ, 16 նոյեմբերի.—Մեր գիւղացութեան ցաւերը քիչ էին կարծես, մէկն էլ եկաւ պակասը լրացնելու։ Այդ աւազակային խմբերն են, որոնք քաղցած գայլերի նման թափառում են գիւղիս այգիներում և դուրս գալով ճանապարհները խլում են թշուառ գիւղացոց արիւն-քրտինքով ձեռք բերած վերջին կոպէկները և երբեմն մերկացնելով ճամբայ դնում։ Աւազակները թալանում են ամեն օր, օրը ցերեկով, թէ գիւղում և թէ ճանապարհներին։ Նրանք ցերեկները լինում են այգիներում, իսկ գիշերները գալիս են գիւղը և գողանում սրա-նրա կովը, ձին, եզը և այլ բաներ։ Խեղճ գիւղացիք չգիտեն ինչպէս առնեն այդ սոսկալի չարիքի առաջը, որը օրըստօրէ աւելի սաստկանում է։ Դիմում են տեղիս ոստիկանութեանը. բայց սա անզօր է։

Մի ամսից աւել է, որ տեղիս բարձր տարրական դպրոցի տեսուչ պ. Ֆ. Պետրոսեանը դասերից յետոյ իւր աշակերտների հետ բահերը ուսներին գնում են այգիները և թաղում պատերազմի դաշտում գտնուող զինուորների այգիները, որոնք զոհ պիտի գնային սառնամանիքներին։ Մինչև հիմա ծածկել են 10 մեծ այգի։

Կենսամթերքների գները օր-օրի վրայ բարձրանում են. շաքար այստեղ չի ճարւում և եղածն էլ ծախւում է փութը 1 ռ. 50 կոպէկ։

Սպառողական խանութը ստացել է մի վագոն նաւթ և ծախում է փութը 10 կոպէկով. իսկ ուրիշ խանութներում ծախում են 25—30 կոպ. վառելիքի մեծ կարիք է զգացւում։ Մի խորանորդ արշին ցախը ծախւում է 5 ռ.։

Հ. Ք. Գնունի

---

ՀԻՆ-ՆԱԽԻՋԵՒԱՆ, 26 նոյեմբ.—Երէկ Պետ. Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանը՝ իւր Պարսկաստանից խփած հեռագրի համաձայն՝ տեսակցեց Հայր Սիոնի հետ, և հարցուփորձ անելով օրւայ ճնշող և անտանելի կացութեան մասին և ստանալով կարևոր տեղեկութիւններ՝ ժողովրդական կենցաղի և վիճակի մասին՝ մեկնեց ուղղակի Պետրոգրադ, ցաւելով, որ իւր ցանկութեան հակառակ հնարաւորութիւն չունեցաւ մնալու Նախիջևանում գէթ մի օր։

X

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Կովկասի Հայոց Բարեգ. Ընկ. Խորհուրդը որոշել է հանգ. Աւետիք Եղեկեանի և Սեդրակ Թառայեանի թաղման համար յատկացնել 100-ական ռուբլի և ներկայ լինել թաղմանը ամբողջ կազմով։

***

Յայտնի բարերար պ. Տիգրան Աֆրիկեանը իւր անուան բաց է անում մի նոր դպրոց ևս Ախալքալակի շրջանի Դլքիլիսա գիւղում, յատկացնելով տարեկան 300 ռուբլի, դպրոցը յանձնելով Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդի խնամքին։ Այդ դպրոցի առաջին կիսամեակի նպաստը 150 ռ. ներկայացրել է Խորհրդին։

*Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհրդի 26-ն նոյեմբերի կայացած նիստում եղան հետեւեալ որոշումները.—Յարգել գրականագէտ հանգուցեալ Սեդրաք Թառայեանի յիշատակը յոտընկայս և Խորհրդի անդամ պ. Վ. Մամուլեանին յանձնարարել ներկայ լինելու Տ. Նազարեանի Գրական-Գեղարւեստական Սալոնում հանգուցեալի յուղարկաւորութեան մասին կայանալիք խորհրդակցութեանը։*

*—Համաձայն միջնորդութեան Կուժիս գիւղի ծխատէր Ղ. քհ. Ամիրջանեանի՝ տալ պահեստի գումարներից պահեստի զինուորների ընտանիքների 10 աշակերտի թոշակադրամ 4-ական ամսից, ընդ. 40 ռ.։*

## ՃԻՒՂԵՐ

*Նոր ճիւղ.—Սաչխերէթի (Քութայիսի նահ.) հայ հասարակութիւնը դիմել է Խորհրդին խնդրելով թոյլ տալ բանալ Կ. Հ. Բ. Ը-թեան նոր ճիւղ։*

## ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

*Դեկտեմբերի 1-ին կայացաւ Հ. Կ. Կոմիտէի հերթական նիստը՝ նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի։ Նիստին ներկայ էին Մուշի լիազօր Կարօ-Սասունին և Վանի լիազօր Օհանջանեան։*

*Գ. Ս. Յարութիւնեան, որ նոր էր վերադարձել Պետրոգրադից, տուեց մի համառօտ զեկուցում իւր տեսակցութիւնների և ստացած տպաւորութիւնների մասին։*

*Նա ունեցել է յատուկ տեսակցութիւն Տատիանեան Կոմիտէի գլխաւոր վարչութեան հետ. վարչութիւնը վստահացրել է, որ թէև առաջ որոշուած է եղել տալ նպաստ միայն 9,000 գաղթական երեխայի ուսման համար, բայց եթէ դպրոցական աշակերտների թիւը աւելի է, Կոմիտէն խոստանում է հոգալ բոլորի ծախսը, նաև ուսուցիչների ամառուայ ռոճիկները։*

*Գաղթականական գործով զբաղուող պետական և ազգային մարմինների հետ գաղթականական որբանոցների և դպրոցների մասին խօսելիս, պ. Յարութիւնեան լաւ տպաւորութիւն և համոզմունք է ստացել, որ կառավարութեան կողմից չի լինելու և ոչ մի սահմանափակում։*

*Այնուհետև Խնուս-Մուշի լիազօր պ. Կարօ-Սասունին տուեց մի ընդարձակ զեկուցում այդ շրջանների գաղթականութեան վիճակի Նորաբաց որբանոցի և գաղթ. դպրոցների մասին։ Որոշուեց որբանոցների պահեստից Նորաբաց որբանոցի համար տալ ճոթեղէն և բարեկարգել այն։ Կարօ-Սասունու զեկուցումը պիտի յանձնուի տպագրութեան։*

*Փախստականների գործի գլխաւոր լիազօր գեն. Թամամշեանի կարգադրութեամբ՝ Ալաշկերտի շրջանի Ղարաքիլիսէի փախստականների համար ուղարկուած է 488 ձեռք տղամարդու, 904 ձեռք կանանց և 789 ձեռք երեխաների հագուստ և սպիտակեղէն, որոնք պիտի բաժանուին Հ. Կ. Կոմիտէի լիազօրի միջոցով։*

*Գեն. Թամամշեանը Երզրումի շրջանապետին և կառավարչին յանձնել է 50,000 ռ. փախստականների գործով զբաղուող հայ կազմակերպութիւնների մասնակցութեամբ փախստականներին նպաստ տալու համար։*

*Հ. Կ. Կոմիտէն շնորհակալութեամբ ստացաւ Յ. Մանթաշեանից յօգուտ Խնուսի և Երզնկայի շրջանից եկած նոր գաղթականների 5,000 ռ.։*

*Երզրումի ներկայացուցիչ Գ. Լանիս մի ընդարձակ զեկուցում տուեց Հ. Կ. Կոմիտէի Երզրումում բացած որբանոցների մասին, ներկայացրեց նաև նախահաշիւ որբանոցների և գաղթ. դպրոցների ծախսերի։*

*Գ. Օհանջանեանի զեկուցումը յետաձգուեց յաջորդ նիստին։*

*Սասունից եկած 36 նորեկ որբերին որոշուեց Սարիղամիշից փոխադրել Ալէքսանդրապոլի նոր որբանոցը։*

*Որբանոցների յանձնաժողովի նախաձեռնութեամբ նոյեմբերի 30-ին կայացաւ Թիֆլիսի որբանոցների խնամակալութեան, կառավարչութեան և ուսուցչութեան ներկայացուցիչներից մի խորհրդակցութիւն՝ որբերին ըստ հասակի և սեռի բաժանելու հարցի մասին։*

*Որբանոցների յանձնաժողովը մշակում է որբանոցներին կից արհեստանոցներ բանալու նախագիծ.*

***

*Հ. Կ. Կոմիտէի գաղթականական Նպաստաբաշխ Մասնաժողովի միջոցաւ 1916 նոյեմ. 20—26-ը՝ 52 կոյր, հիւանդ և անկեալ գաղթականներին տրուած է 175 ռ. 10 կ., վեց գաղթականների 11 ռ. ճանապարհի համար հացի փող, գումարը 186 ռ. 10 կ.։*

---

# ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

## ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Ե կ ա տ ե ր ի ն ո դ ա ր—Մելքոնեանից*

*Սկսել ենք ալիւր բարձել Սվեատոյ-Կրեստ կայարանում. Դանիլևսկին տուեց մեզ նորից 30 վագոն թեփ. ալիւր Պորոշինսկայա կայարանում, որ բաժանեցի Ղարսի գծի վրայ եղած պահեստների համար։ Մօտ օրերս կը գնէի նորից քանի վագոն Թիֆլիսի համար։*

—

*Փ ո թ ի—Օհանեանից*

*Ուրանիա շոքենաւով ստացուեց մեզ համար 20 վագոն ալիւր։*

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

*Նոյեմբերի 23-ից մինչև դեկտեմբերի 1-ը*

Ալիւր՝ *ուղարկուած է Երևան՝ 2 վագոն, Ղարս՝ 2, Վաղարշապատ՝ 3, Իգդիր՝ 3, Սարիղամիշ՝ 4, Ալէքսանդրապոլ և Ղամարլու մի-մի վագոն։*

Գարի՝ *ուղարկուած է Աղստաֆա և Իգդիր երկուական վագոն։* Շաքարաւազ՝ *ուղարկուած է Ղարաքիլիսա 1 վագոն։*

Նոր գնումներ՝ *առուած է 50 վագոն ալիւր և 18՝ ցորեն։*

---

# Ք ր ո ն ի կ ո ն

*Մոսկուայում գալ յունուարին մտադրութիւն կայ լոյս ընծայելու մի «Կովկասեան ժողովածու» (Сборникъ о Кавказѣ), որի նպատակն է ռուս հասարակութեանը ծանօթացնել մեր երկրի կեանքը։ Ժողովածուն հրատարակում է Մոսկուայի «Задруга» ընկերութիւնը խմբագրութեամբ իշխան Գ. Մ. Թումանեանի։*

*Ժողովածուին մասնակցելու են իրենց գրուածքներով յայտնի հայ, վրացի, մահմեդական և ռուս հեղինակներ։ Գրքում կը լինեն Լէօի, Մ. Բերբերեանի, Ս. Կակաբաձէի, Դաղեստանսկու, Ինժինէր Սապիցկու և ուրիշների յօդուածները։ Հրատարակութիւնը լինելու է պատկերազարդ։*

***

*Կ. Հ. Բ. Ը-թեան ճաշարանից բաց է թողնուած հոկտեմբերի ընթացքում 5490 բաժին ճաշ, նոյեմբերի ընթացքում՝ 6232 բաժին ճաշ։*

*Նոյեմբերի ընթացքում Հ. Բ. Ընկ. գրադարանից բաց է թողնուած 4,930 գիրք, որից 3,638 հայերէն, 1,292 ռուսերէն։*

*Նոյն ամսուայ ընթացքում ընթերցարանն են յաճախել 7,397 հոգի, որից 3,801 կին և 3,596 տղամարդ։*

*Մինչև դեկտեմբերի 31-ը գրադարանի բաժանորդների թիւը հասաւ մինչև 2,229-ի, մինչդեռ անցեալ տարի մինչև նոյն ժամանակը նրանց թիւը կազմում էր 1,842, այսինքն՝ 387 հոգի պակաս։ Ի նկատի ունենալով բաժանորդների շատանալը, որոշուած է աւելի շատ կարդացուող գրքերից օրինակներ աւելացնել։*

* * *

*Քաղաքային խորհրդարանի վերջին նիստում որոշուած է բոլորովին վերացնել 3 կոպէկանոց տոմսերը և նշանակել գծի ամեն մի հատուածի համար 5 կոպէկ։*

* * *

*Երեքշաբթի, նոյեմբերի 29-ին առաջնորդարանում կայացաւ փախստականներին օգնող հայկական կազմակերպութիւնների միութեան նիստը, ուր ներկայ էին նաև Սինոդի անդամ Մաթէոս եպիսկոպոսը, Էջմիածնի «Եղբ. Օգնութեան» գլխ. կարգադիր յանձնաժողովի նախագահ Գէորգ վարդապետը և Պետական Դումայի անդամ Մ. Պապաջանեանը։*

*Մ. Պապաջանեանը ժողովին յայտնեց, որ իշխանութեան թոյլտւութեամբ դեկտեմբերի 27-ին և 31-ին Էջմիածնում կայանալու է հայկ. կազմակերպութիւնների համագումար, որի քննելիք հարցերը մշակուեցին այդ ժողովում և որոշուեց զեկուցել այդ մասին Նորին Վեհափառութեան Ամենայն Հայոց Կաթողիկոսին։*

* * *

*Բագւում կազմակերպւում է հայ ուսուցչ. միութիւն, որի կանոնադրութիւնը մշակւում է և կը ներկայացուի պատշաճաւոր իշխանութեան ի հաստատութիւն։*

* * *

*Պետական Խորհրդի պատուիրակները համակրութեամբ են վերաբերւում այն բանին, որ Կովկասը առետր. և արդիւնաբերական ներկայացուցիչ ունենայ Պետ. Խորհրդում, ըստ որում և համակրանքով են ընդունում Բր. Վերմիշեանի ընտրութեանը՝ որպէս պատուիրակի։*

* * *

*Պետական Խորհրդի ժողովրդական կրթութեան մասնաժողովը հաւանութիւն տուաւ այն օրինագծին, որով Թիֆլիսում բացուելու է բազմարուեստեան դպրոց (պոլիտեխնիկում)։ Մասնաժողովը ցանկութիւն յայտնեց, որ անհրաժեշտ է Թիֆլիսում բանալ նաև համալսարան։*

* * *

*Հաւլաբարի կողմից ընտրուած քաղաքային իրաւասուների խորհրդակցութիւնը որոշեց դիմել քաղաքային վարչութեան, խնդրելով որ Դումա մացնեն մի զեկուցում՝ Հաւլաբարում ժողովրդական տուն բանալու համար 50,000 ռ. յատկացնելու Ա. Մատինեանի կտակած գումարի տոկոսներից։*

* * *

*Կ. Ի. Շաշկովսկու փոխարէն Թիֆլիսի պարենաւորման գործի լիազոր է նշանակուած Թիֆլիսի նահանգապետ Մանդրիկան։*

* * *

*Վերջերս վախճանուած հասարակական գործիչներ՝ Ս. Թառայեանի թաղումը կայանալու է այսօր, իսկ Ա. Եզեկեանինը՝ տեղի ունեցաւ երէկ. երկուսն էլ թաղուեցան Խոջիվանքի գերեզմանատանը։*

* * *

*Երաժշտագէտ Սպէնդիարեանը Թատրերգի (օպերայի) է վերածել բանաստեղծ Յովհ. Թումանեանցի «Թմկաբերդի առումը» քերթուածը (պոէման)։*

* * *

*Անգլիական պարլամենտի անդամ Նոյէլ Բքստոն (Հարոլդ Բքստոնի եղբայրը) նիստում բանախօսել է հայկական հարցի մասին. նա շեշտել է այն միտքը, որ տակաւին քիչ բան է արուած Անգլիայում, ինչպէս առհասարակ համայն Եւրոպայում, Հայաստանը և Հայերը Եւրոպային ծանօթացնելու հանգամանօրէն։*

# Գեղարուեստ

* * *

*Պ. Պ. Մ.-ին*

*Երանի՜ քեզ, քո չոր գլխին,*
*Ո՛չ ոք չունիս լայն աշխարհում.*
*Բաց է քո դէմ անծայր ուղին,*
*Դու կարօտով յետ չես նայում։*

*Ո՛չ պարտք ունես, ո՛չ առնելիք,*
*Դու չես մեխուած տխուր հողին.*
*Մէկ են երէկն, օրը գալիք—*
*Երանի՜ քեզ, քո չոր գլխին։*

*Իշխան ու տէր քո ժամերի,*
*Կեանքդ մատնած սրտիդ խաղին՝*
*Կուզես ապրի, կուզես—մեռի...*
*Երանի՜ քեզ, քո չոր գլխին։*

* * *

*Մեր սրտերում վիշտն է թառած*
*Անմեկին,*
*Մենք փնտռում ենք բաղկատարած*
*Միշտ մէկին։*

*Ջենք գոհանում գտած գանձով*
*Ինչուին.*
*Սահման չկայ մեզ այրող ծով*
*Ծարաւին։*

*Մեզ դիւթում են երբեմնակի*
*Շողք ու բոյր,*
*Տալիս հրճուանք, մի կիրակի,*
*Մի համբոյր։*

*Ժամն է անցնում, իր հետ տանում*
*Հարբեցում.*
*Տօն օրից էլ շուտ է մթնում*
*Հիացում։*

*Եւ մեր սրտում կարօտ թառած*
*Անմեկին.—*
*Որոնում ենք բաղկատարած՝*
*Միշտ մէկին։*

*Գ. Բեալաշեան*

# Գրականութիւն

## ԽԱՒԱՐԻՆ ՄԷՋ

Երկու օր առաջուայ կենդանի կեանքը շնչող քաղաքը մեռած էր այժմ։ Դարեր շարունակ անյողդողդ ճիգերով բանդակուած քաղքին գեղեցկութիւնը ակնթարթի մը մէջ չքացած՝ քամուն տրուող յարդի դէզին նման։

Տուները մնացեր էին որբ, տխուր և անմարդաբնակ, դուռներին կրունկներու վրայ բաց, կանանչ ու սաղարթախիտ ծառերն՝ խնամող ձեռներէ զուրկ, ճնշուած ու խեղճացած. կեանքի պտուղներովը յուռթի ցորենի հասկերն՝ արեւուն այրող ճաճանչին ներքև չորցած ու ծարաւի։

Փողոցները՝ նեղ, բազմարդ, այժմ ամայի և մեռելային լռութեան մատնուած։ Ո՛չ բզէզներն ու թիթեռնիկները կը համարձակէին տատանել օդին ալիքները, ոչ հաւքերը կը գեղգեղէին ուռիներու և բարդիներու ճիւղերուն վրայ և ոչ ալ մի կենդանի իր խոպոտ բառաչով կը խանգարէր քաղքին համատարած լռութիւնը։

Երկու օր առաջ մարդիկ փախեր էին սարսափահար, ու կը թուէր թէ անօթի, կատաղած գայլերու հօտ մը կուգար. կը թուէր թէ անոնք խուռներամ կը հսկէին մօտակայ լեռներու ծերպերուն մէջ՝ անյագ, կատաղի աչքերով՝ յարմար րոպէին խուժելու, ոչնչացնելու համար հոյակապ քաղքին կենդանի բեկորները։

Բայց ահա խլրտում մը, կենդանութեան բաբախում մը՝ ամայի փողոցներէն միոյն մէջ, ուր անօթի և բզկտուած մի շուն կը շրջագայէր համարձակ, կտրտուած սայլերուն անիւներն ի վար միզելով. ատամներն դուրս կը կախուէին բերանէն փրփրախառն ու կատաղի, մեռելներու դիակներն գիշատելու համար. ուրիշ մը ահա, շնորհիւ իր զարգացած և սուր հոտառութեան, մառաններուն անկիւններն կը մտնէր՝ անոնցմէ մաէ-հոտած կտորներ դուրս քաշելու համար։

Ահա սպիտակամորթ, կապոյտ և ապակեփայլ աչքերով աղուոր կատու մը, որ կտուրներու վրայ ոստոստելով մելամաղձոտ հայեացք մը կը սփռէ շրջապատի ամայութեան մէջ և յուսահատական ճիչեր կ'արձակէ կանչելու համար իր սիրելի տէրերուն, որոնք զարմանալի և յանկարծական կերպով փախեր ու լքեր էին իրենց շէն օջախներն։

Մի յետ ընկած խրճիթի մէջ միայն գիշերները երբեմն-երբեմն ճրագը կը վառուէր, որու դեղնած ցոլքերն տնակի երդիքներէն յորդելով կը շաղուէին թանձր խաւարի ծոցին մէջ. կերեւնար որ այնտեղ տակաւին մարդիկ կը բնակէին, ինչ-որ տարօրինակ հակադրութիւն մը կազմէր քաղքի մեռելաշուք վիճակին։ Շատ մեծ չէր այդ խրճիթը. նեղ ու մութ նրբանցքէն յետոյ, կը կանգնէր տխեղծ շինութիւն մը, քանի մը քառակուսի քայլաչափ տարածութեամբ, որու հողաշէն յատակին երկնցած էր հնամաշ կապերտ մը, զանազան լաթերով վերմակուած թոնիր մը, պատերուն ճեղքուած էին զոյգ փոքրիկ լուսամուտ երկինքը տեսնալու համար ու այսքան միայն։

Նազենիկն էր այդ տան բնակիչը, իր պառաւ և անդամալոյծ սկեսրօր և պզտիկ, երկու տարու զաւկին հետ։ Նազանի հարս մը, վշտէ ու տառապանքէ դալկացած այտերով, որոնց վաղաժամ խորշոմներուն վրայ սակայն՝ վաղեմի աղուոր գեղեցկութեան մը հետքերը դրոշմուած կը կենային։ Աչքերու գրաւիչ արտայայտութեանը մէջ՝ մելամաղձոտ ու մռայլ ցոլք մը, գլխուն մետաքսեայ թելերով նախշած եազման, միջահասակ մարմինը պարփակող կապտագոյն վերնազգեստ և ահա այդ կինն իր ամբողջութեամբ պատկերացած։

Դեռ հինգ ամիս առաջ էր, որ գինուոր տարած էին իր ամուսինը, իր նորահարսի փափուկ կողքերը տաքցնող սիրելի տղամարդը. և սակայն իզուր կսպասէր անձկագին՝ անկէ սփոփիչ տեղեկութեան մը։

Հիւղին ստուերախիտ մէկ անկիւն, Նազենիկին կեսրայրը կը նստէր, հին լաթերու մէջ ծրարուած։ Հինգ տարի էր, որ նախկին այդ քաջառողջ և յաղթանդամ մարդը, ծերութեան հարուածներուն ներքև կքած ու անդամալոյծ դարձած էր, ուսերն ի վար իջնող մազերն ճերմակեր էին ձիւնի նման և աչքերուն լոյսը կը մթննար, հազիւ զօրելով խրճիթին առարկաներն որոշելու։

—Ա՜յ, վա՜յ, ջահիլութիւն, հէյրան ըլնիմ քեզի, գնացիր, հետդ տանելով ոտներուս ուժն ու զօրութիւն և աչքերուս պոծառ լոյսը. այսպէս կը մրմնջար շարունակ ծերունի անդամալոյծը յիշելով իր կեանքի երիտասարդ օրերուն գեղեցկութիւնն և երբ «չար քամին» (այսպէս կ'անուանէր ինք ոտներուն ցաւը) սողար օձի մը պէս իր ծունկերուն ու միսին մէջէն, նախկին առողջ և հուժկու կեանքին կարօտը աւելի կը յորդէր և արցունքներով կը թրջէր աչքերուն դեղնած թարթիչները։

Հինգ երկար տարիներու այդ նստակեաց և գետնաքարշ կենցաղը վերին աստիճանի զգայուն-բնաւորութիւն մը ստեղծած էր ներսը և ամեն անգամ, որ ճիչ մը կամ անախորժ աղաղակ մը կը զարնուէին ականջներուն, շրթունքները կսկսէին դողդղալ բարկութիւնէն և չոր, տախտակաձայն հազ մը կը քերէր կոկորդին նեղցած պատերը։ Իսկ եթէ այդ ձայնը թոնիրին շուրթը ննջող մանկան ըլլար, ծերուկ անդամալոյծը սրտնեղութիւնէն կ'ոռնար և անէծքներու տարափ մը կ'անձրևէր հարսի գլխուն։

Մինչ Նազենիկը համբերութեամբ կը տանէր սկեսրօր սրտնեղութիւնը, առանց վրդովումի և իր կեանքը կը մաշէր այդ յետընկած և խոնաւ հիւղին մէջ։

Ահա այդպէս էին օրերը, երբ քաղաքն սկսաւ դատարկուիլ. մարդիկ անծանօթ սարսափէ մը խելակորոյս, թողին իրենց օջախները, շէն ու պայծառ այգիները և հեռացան։

Ընդհանուր այդ խուճապին ժամանակ Նազենիկը սակայն տեղէն չը շարժուեցաւ. ինչպէ՞ս կարող էր թողնել այդ ծերունի անդամալոյծը և երթալ. այդ միտքը քանի մը վարկեան տանջեց զինքը և վերջը անկարելի համարելով այդ, մնաց։ Ծերունի անդամալոյծը շատ թախանձեց, որ Նազենիկը թողնի իրեն, երեխան առնի և երթայ ժողովուրդին հետ։

—Աղջի, Նազենիկ, սեւոր, խալխը փախաւ, խելքդ գլուխդ բեր, վեր կաց, երեխան շալակդ առ ու գնա։

Բայց Նազենիկն անդրդուելի կերպով կանգնած էր խրճիթի պատին առջև ու նայուածքը սեւեռած թոնիրին կուշտը քունի հանդարտ թևերուն օրօրուող մանկան, որու դիմագիծերուն անմեղ արտայայտութիւնը լուսաշող պատկերի մը պէս կը նկարուէր խրճիթին կիսաստուեր մթութեանը մէջ։

Այդ պատկերը իր հոգու մէջ կ'արթնցնէր ամուսնու պաշտելի դէմքը, որոնք այնքան կը նմանէին իրարու և այնքան մըտերիմ կապերով կապուած էին իրեն հետ։

Բայց այդ ալեհեր ծերունի՞ն, որ երկար տարիներ տանջած էր զինք իր բնաւորութեան բացասական կողմերով. ինչպէս թողնել ու հեռանալ զայն, ճակատագրի ձեռքին լքել իր սիրելի ամուսնուն հօրը. այդ անկարելի է և ահա թէ ինչու հակառակ իր սիրտը համակող անծանօթ երկիւղներուն, նա որոշեց մնալ։

Ծերունի անդամալոյծը, տեսնելով որ հարսը չի հեռանար, երախտագիտութեան խորունկ զգայնութեամբ մը համակուեցաւ անոր հանդէպ, աչքերն լեցուեցան արցունքի յորդ կայլակներով և սկսաւ թախանձագին խնդրել, որ թողնի իրեն հեռանայ. ինք ծերացեր է արդէն, մահուան վարկեանները մօտեցած են, կեանքը իրեն համար յարդի շիւղի մը չափ արժէք չունի։

Բայց Նազենիկը յամառ կերպով կը շարունակէր պնդել։

—Ո՛չ, ո՛չ, հայրիկ, անկարելի բան է, որ երթամ, ես կը մընամ այստեղ և միասին Աստծուն կապուինենք։

Սկեսրայրը տեսնալով, որ անկարելի է համոզել զայն, ալ բերան չը բացաւ։

Բայց երեկոյեան, երբ Նազենիկը կամացուկ մը փողոցին դուռը բացաւ և գլուխը դուրս երկարեց, տեսնալու համար ամայացած տուներն և անկենդան փողոցները, սարսափի զգացումով մը բռնուեցաւ և ամբողջ մարմինն սկսաւ դողդղալ։

Նա դուռը կամացուկ փակեց և ներս եկաւ։ «Վա՜յ, միայն մենք ենք մնացեր ողջ քաղքին մէջ», մրմնջաց ան և երակներուն մէջէն ցուրտ սարսուռ մը սկսաւ հոսիլ։ Վարկեան մը սառած մնաց ան խրճիթի թանձրախիտ մթութեանը մէջ, հայեացքը քըթթած անորոշ կէտի մը։

Անհա՜ անոր աչքերուն պատկերուեցաւ քաղաքի մռայլ և անկենդան պատկերը, ուր ոչ մէկ կենդանի շունչ կը համարձակի շարժել համատարած լռութիւնը, բացի իրմէն, որ խիզախեր էր մնալ և վտանգել իր գոյութիւնը...։

Խաւարի մէջէն Նազենիկի դողդոջուն մատները վառեցին պատէն առկախ ձէթէ ճրագը, որու ամխացած կտուցէն փետտուող նուաղկոտ ցոլքերն լուսաւորեցին քունէն արթնցող տղուն դէմքը։ Նա մօտեցաւ խանդաղատանօք դէպի մանուկը և առնելով զայն իր ծոցին մէջ, համբոյրներով թրջեց անոր փամփլիկ թշերը։

Փոքրիկ երեխան վեր մակին ներքևէն հանելով թևերը, քընքշօրէն գգուել սկսաւ մօր սիրելի դէմքը։ Մանկական այդ անոյշ զգայնութիւնը, մօր գիտակցութեան մէջ արթնցուց յանկարծ տխուր և անջնջելի յիշատակներ. մթնշաղ աչքերուն պատկերացան մանկութեան օրերու միամիտ ու քաղցր կեանքը, իր երազներո՜վ ու հրապոյրներով. հապա ամուսնութեան սկզբնական երջանիկ սարսուռնե՜րը... ա՜խ, այդ բոլորը, անուշահոտ ծաղիկներու փունջի մը պէս, այժմ այնպէս փետտուած էին և մահուան ցրտութիւն շնչող մրրիկ մը, այնպէս կը հալածէր ու կը ցրուէր զանոնք...։

— Ո՞վ գիտէ, ո՞ր քարի կամ ժայռի ներքև ընկած է այժմ իր սիրելի ամուսին կամ հալածական եղնիկի մը պէս կը թափառէ ձերպերու և ձորձորներու մէջ։ Բայց անծանօթ նախազգացում մը կստիպէ զինք կարծել, որ արդէն մեռած է ան... օ՜, այդ միտքը այնքան ծանր է իրեն համար և միևնոյն ժամանակ այնքան անըմբռնելի։ Մահուան զգայնութիւնը իր գիտակցութեան մէջ չէր կարող հաշտուել բնաւ, սիրած մարդու մտապատկերին հետ, որու գոյութիւնէն անգոյութեան անցնելու զգացումին ծանրութիւնն էր, որ հսկայ քարի մը պէս կը սեղմէր կնոջ գիտակցութիւնը։

Ծ. Թորգոմեան

(Շարունակութիւնը հետեւեալով)

## ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

### «ԳՈՒՐԳԷՆ» ԴԵՐԱՍԱՆԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ

Նոյեմբերի 24-ին «Գուրգէն» Դերասանական Ընկերութիւնը ներկայացրեց Դր. Դէյի «Տրիլբի» թատերերգը։

Տրիլբիի դերը կատարում էր տ. Մայսուրեան, իսկ Սվէնգալունը՝ պ. Աբէլեան։ Այդ երկու դերերն էլ կազմում էին թատրոնի առանցքը։ Պ. Աբէլեան շատ յաջող կերպով կարողացաւ ներկայացնել հրէայ երաժշտի տիպը։ Շարժուձևերի ազատութիւնն և հոգեբանական ելևէջներին յարմարեցրած արտայայտութիւնները մեծ ուշադրութիւն էին գրաւում։ Մանաւանդ Տրիլբիի հետ ունեցած առանձին խօսակցութեանց ժամանակ և նրան իրեն ենթարկելու համար ստեղծած միջոցների գործադրութեամբ նա ապացոյց տուեց իր տաղանդի ուժգնութեան։ Տիկ. Մայսուրեանի Տրիլբին մեզ ներկայացաւ իբրև մի շփոթուած գեղեցկուհի, որ բազմաթիւ երկրպագուների առջև չի իմանում որին ընտրել. Նա վերջին տեսարաններում աւելի յուզիչ դարձրեց խաղը, մանաւանդ այն ժամանակ, երբ բեմ պիտի դուրս գար իր ամուսնու հետ երգելու համար։

Տրիլբիի երկրպագուներից Բիլլի նկարչի դերը կատարում էր պ. Մ. Ալիխանեան, իսկ Ժէկկօ երաժշտին՝ պ. Անդրանիկ. Վերջինս թոյլ էր և մի նոր բան չը կարողացաւ ցուցադրել։ Յաջող էին իրենց փոքրիկ դերերում պ. Վրոյր և տ. Մանուչարեան. Միւսները քիչ բացառութեամբ կարողացան պահպանել ամբողջութիւնը։

### ՀԱՅ ԴՐԱՄԱՏԻԿ. ԸՆԿ. ԽՄԲԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ

Նոյեմբերի 28-ին Հայ Դրամատիկ. Ընկ. խումբը ներկայացրեց Ա. Բերնշտէյնի «Իսրայէլ» թատերերգը։

Այս թատերերգի մէջ երևան է գալիս այն հալածանքը, որ քաղաքակիրթ աշխարհում մղւում է հրէայ ազգի հանդէպ։ Այս պայքարը աւելի կատաղի բնոյթ է ստանում այն ժամանակ, երբ ազնուականութիւնն սկսում է տեղի տալ հետզհետէ զարգացող ասպարէզ գրաւող դրամատէր դասակարգի առջև։

Թատերերգի մէջ առաջին դասի ներկայացուցիչն է իշխան Տիբօ, իսկ երկրորդին՝ Գիւդլէր։ Պ. Փափազեանը կատարում էր իշխան Տիբոյի դերը. մինչև այնտեղ՝ երբ յայտնւում է, որ իր Գիւդլերի հարազատ զաւակն է եղել, նա շատ գեղեցիկ պահպանեց ազնուականի բնոյթագիրը։ Գաղտնիքի յայտնուելուց յետոյ պ. Փափազեանը սկսեց հոգեկան տանջանքների ենթարկուել մի կողմից վիրաւորուած զգալով իր ազնուականի արժանապատւութիւնն և միւս կողմից յանկարծակիօրէն յայտնուած հօր գէմ իր ունենալիք մենամարտութիւնը. այդ երկու զգացումների բախումը վերջի վերջոյ ինքնասպանութեան առաջնորդեցին նրան.

Պ. Սեւումեանը՝ Գիւդլերի դերում, սկզբից մինչև վերջ [illegible] բազատ և սառն կերպով ներկայացրեց հրէայի տիպը, նրա ցեղային վիրաւորուած ինքնասիրութիւնը, հաստատակամութիւնը և տարիներից ի վեր իր մէջ գաղտնի վառուող որդիական սէրը.

Դքսուհու դերում տ. Սիրանոյշը կարողացաւ երևան բերել սիրող սրտի երկու վիրաւորուած զգացումներից յառաջ եկած հոգեկան տառապանքը։ Նա արտաքուստ մեղմ էր, բայց ներքուստ յուզուող և տառապող։

Միւս դերակատարներ՝ տ. պ. Մանուէլեան, Բերոյեան, Աւետեան, Ազատեան և ուրիշները կարողացան պահպանել ամբողջութիւնն իրենց փոքրիկ դերերով։

Լեման

---

Հայոց Դրամատիկ Ընկերութեան խմբի տասներորդ հերթական ներկայացումը կը կայանայ դեկտեմբերի 5-ին, Արտիստական թատրոնում։ Խմբի դերուսոյց (ռեժիսէօր) Յ. Սեւումեանի պատւախաղին (բենեֆիս) կը ներկայացնեն «Շ է յ լ օ կ» Շէքսպիրի. Պորցիայի դերը կանձնաւորէ տիկին Սիրանոյշը, Շէյլօկին՝ պատւընկալ (բենեֆիցիանտ) Յ. Սեւումեանը, իսկ Բասսանիոյին՝ Վ. Փափազեանը։ Մասնակցում է խումբը լրիւ։

## Գ ի տ ո ւ թ ի ւ ն

### ՑԵՂԱՅԻՆ ԶԳԱՑՈՒՄԸ*)

### ԻԲՐԵՒ ՄԻ ԳՈՐԾՕՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Հարցը հետևեալն է. թէ ինչպէս այնչափ դարերի տևողութեան այսպէս ասած ստորերկրեայ ուղիներով հոսող ցեղային գիտակցութեան ըմբռնումը յանկարծ դարձաւ մի ահաւոր ույժ

*) Տես «Համբաւաբեր» № 48։

պակաս չափով, և եղականօրէն գերազանցուած մի առանձին երկրում, այդպէս էլ խորհողների, գրողների և գործի մարդկանց պաշտօն և պարտքերը պէտք է լինի հարկադրել մի աւելի լայն, առողջ և աւելի համակրական աշխարհահայեացք, որի մէջ ամէն ցեղ կարող է շատ ստանալ և շատ էլ տալ. Նրանց պարտք պէտք է լինի մատնանշել որ անդիտակից բայց անդադրում համագործակցութեամբ օժտուած ցեղերի փոխադարձ ուսուցումով և ծանօթութեամբ է, որ կատարուել է մարդկային ամբողջ յառաջդիմութիւնը։ Կատարելութեան կարելի է հասնել ոչ թէ ոեէ գերազանց ձեւի գերակայութեամբ, այլ մի շատ տարբեր ձեւերի լաւագոյն տարրերի ձուլումով։

Ամէն ցեղ և ամէն ազգ պէտք է սովորի, որ նոյնիսկ իր սեփական շահերի տեսակէտին նա չպէտք է ցանկայ գերակշռութիւն, ոչ էլ ճգնի իր սեփական տիպը աշխարհի վրայ դրոշմելու. Նրանցից իւրաքանչիւրը պէտք է ճանաչի, որ նա գոյութիւն ունի ոչ միայն սեփական բարիքի համար, այլ նաև յօգուտ իր համանման մարդ-արարածներին և թէ նա պարտական է բարոյապէս պատասխանատու լինել բովանդակ մարդկային ընտանիքին։

Այս սկզբունքների մի ընդհանուր ճանաչողութիւն կարող է թուել շատ հեռու. բայց բարեացակամ մարդկանց համար կայ ուրիշ անելիք բացի համբերութեամբ այդ նպատակի իրագործման աշխատելուց՝ յենուած հոգեկան ոյժերի և ճշմարտութեան վերջնական յաղթանակի հաւատքի վրայ։

«Աւելի լաւ է տալ քան առնել». թւում, թէ այս մի դժուար ասացուածք է, որ ոչ մի ազգ կամ ցեղ չի ընդունի։ Այսուամենայնիւ միթէ մի ազգի գերագոյն հպարտութիւնը չպէտք է լինի իր սեփական առատութիւնից ուրիշներին տալու կարողութիւնը։ Ինչպէս որ մենք պատւում ենք անցեալի մեծ դէմքերը՝ օրէնսդիրներ և հնարիչներ, արուեստագէտներ և բանաստեղծներ՝ նրանց մեզ թողած ժառանգութեան համար, այնպէս էլ չպէ՞տք է որ մի ժողովուրդ գլխաւորապէս մեծարուի բոլոր մարդկութեան մատուցած ծառայութիւնների և նրան ընծայած բարիքների համար. և արդեօք սերունդը չպիտի համարէ այդ նրա ճշմարտագոյն փառքը։

Ջէմս Բրայս. Թարգմ. Ա. Սաֆրաստեան

Վ Ե Ր Ջ

---

## ԿԻՆԵՄԱՏՈԳՐԱՖԻ ՀՆԱՐԻՉԸ

Հազիւ թէ որև մէկը մեզնից իմանայ, թէ ով է հնարիչը կենդանի լուսանկարչութեան սենեկի (камера), որով ստացւում է շարժանկարչական (կինեմատոգրաֆ) երիզ։ Բրիտոսի պաշտօնեայ, համեստ ամերիկացի պաստոր Հաննիբալ Գուդվինն է դա։

Գուդվինը երկար տարիներ Նիւ-Ջերսի նահանգի Նիւ-Եօրկ քաղաքի աղօթատան աւագերէցն էր։ Համարեա թէ իր կեանքի երկրորդ կէսը նա նուիրել է հետախուզմանց և կատարելագործման իր գիւտի։

Յաճախ նա ուղղակի իր աշխատանոցից (Лабораторія), քիմիական փորձերից կեղտոտուած ձեռքերով ուղեւորւում էր ամբիոն բարձրանալու։

Ապրեց և մեռաւ ամենահամեստ նիւթականով, համարեա թէ աղքատ, և կեանքի վերջում տեսաւ վշտահար, որ իր նշանաւոր գիւտի իրաւունքը ժխտում էին։ Միայն սակաւ ինչ առաջ «Ֆաստման Կոդակ և ընկ.» բաժնետիրական ընկերութիւնը հսկայական գումարով, որ վճարում է 60 տոկոս շահամաս, ճանաչեց Գուդվինի հնարի առաջնութիւնը և սկսեց տալ վայելուչ գումար հնարչի այրուն, հոգեորդուն և հոգեզաւակի՝

Բնորոշ է, որ Գուդվինը մղուել է դէպի այս հնարը իր տո երեխաները տածած սիրուց։ Նա զբաղւում էր լուսանկարչութեան փորձերով՝ կիրակնօրեայ դպրոցի աշակերտներին ամենալաւ կերպով ցոյց տալու Ս. Գրքի կեանքից պատկերներ և այն աստիճան հրապուրուել է այդ աշխատանքով, որ նուիրել է պաշտօնական պարտականութիւնից ազատ ժամերը։ Շատ անգամ նա իր աշխատանոցում նստում էր մինչև արշալոյս, իսկ նորա ծխականներից մի քանիսը դատապարտում էին նրան լուրեր տարածելով, իբրև թէ նա աշխատում է մի դժոխային մեքենայ հնարելու։ Ոչոքի մտքովն էլ չէր անցնում, որ մի համեստ գաւառական քահանայի վիճակուած էր յեղափոխել լուսանկարչութեան արուեստը։

---

# Մ ա մ ո ւ լ

Բաթումում տեղի ունեցած քստմնելի դէպքի առթիւ «Հորիզոնը» գրում է.

«Բանիցս մեր ականջին է հասել, որ պատասխանատու պաշտօններ ստանձնած մի կարգի մարդիկ այս ու այն մութ անկիւնում առիթը ձեռքից բաց չեն թողնում ցեխ շպրտելու հայ ժողովրդի հասցէին։ Այսպիսի տգեղ վերաբերմունքի մասին լուրերը յաճախ ենք ստանում մանաւանդ նոր գրաւուած վայրերից։ Բայց որ հայատեաց հայհոյիչների անպատկառութիւնն այն աստիճանին հասնի, որ նրանք հրապարակօրէն, պաշտօնական գործի միջոցին, համարձակուեն ասել «вы армяне всѣ подлецы и мошенники» այդ մենք երեւակայել անգամ չէինք կարող...»

Ապա թերթը շարունակում է.

«Մենք շատ լաւ գիտենք, որ հայ ժողովուրդը այնքան բարձր է կանգնած, որ Սուսլովների անմաքուր ձեռները նրան հասնել և բծաւորել չեն կարող. բայց և այնպէս մենք միանգամայն անհանդուրժելի ենք համարում, որ այն ժամանակ, երբ այդ ժողովուրդը ուղղակի արնաքամ է լինում պատերազմի դաշտում և հսկայական զոհեր տալիս թիկունքում, որևէ մէկը նրա հասցէին այնպիսի լկիրշ խօսքեր ասի և այնուամենայնիւ անպատիժ մնայ։ Ապա թերթը պահանջում է, որ Բաթումի դէպքը խարանուի, որովհետև այդ եզակի երեւոյթ չէ, այլ այդ «Սուսլովական» մտայնութեան արտայայտութիւն։

«Մշակ»ը գրում է.

«Այն ժամանակ, երբ հայրենիքի բոլոր ազգութիւնների և ցեղերի քաջ զաւակները կողք-կողքի տուած միասին իրանց արիւնն են թափում հայրենիքի համար, առանց հարցնելու թէ ով ո՞ր ազգութեան է պատկանում, երբ նրանք՝ և ռուս, և հայ, և վրացի զինուորականները ապրում են ռազմաճակատի վրայ իբրև եղբայրներ, թիկունքում գտնւում է այդ զօրքի մի ներկայացուցիչ, որ նախատում է վիրաւորական կերպով այդ ազգութիւններից մէկի անունն կրողին և ընդհանրացնում վիրաւորանքն ամբողջ մի ազգի հասցէին։ Այդ ճշմարիտ հայրենասէրի գործ չէ։ Եթէ հայ Մնդոյեանը նոյնիսկ յանցաւոր լինէր, եթէ նա չը կամենար կատարել զինուորականի օրինաւոր պահանջը, եթէ նա խարեբայ լինէր, այդտեղ յանցաւոր կը լինէր միայն մի հայը՝ Մնդոյեանը, այլ ոչ բոլոր հայերը։ Միթէ այս պարզ, տարրական ճշմարտութիւնը փոխ-գնդապետ Սուսլովն և նման մարդիկ չեն կարողանում ըմբռնել»։

Այդ տխուր դէպքի առթիւ Բագուի «Արև»ը աւելացնում է.

«Բաթումի քաղաքային իրաւասու Մնդոյեանի վրայ կատարուել է մի կոպիտ և անդուգական յարձակում։ Զօրքի պէտքերի համար կամենում են գրաւել հայ ազգի իրաւասուի բնակարանը։ Այդ գործողութեան ժամանակ փոխ-գնդապետ Սուսլովը յոխձակում է գործում քաղաքային դումայի անդամի վրայ. նա անար-

*գում է նրան, կոպիտ կերպով հայհոյում և վերջն էլ թոյլ է տալիս իրեն ապտակել նրան։*

*«Եւ ինչ որ աւելի անհանդուրժելի է, ինչ որ խորապէս ծանր է ազդում բանական մարդու վրայ, այն է, որ փոխ-գնդապետը հայհոյում է նաև իրաւասու Մնդոյեանի ազգութիւնը»։*

---

*Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*

*Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*

---

# Յայտարարութիւններ



---

*Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի* Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 49

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

***Մոսկուայի հայկական կոմիտէի Աշտարակի որբանոցների որբերի անուանացուցակը***

*14-ին Մայիսի 1916 թ.*

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայրը | Տարիքը | Ծնողք ունի՞ | Ծնողների տեղը | Որբանոց | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Բոողանճեան Պարգեւուհի | Վան-Այգեստան | 9 | մայր | Աշտարակ | 1 | |
| 2 | » Վանանուշ | » » | 6 | » | " | » | |
| 3 | Շաքարեան Աստղիկ | " » | 14 | — | | 4 | Քոյրերն՝ Աշտարակ |
| 4 | » Սուրէն | » › | 13 | — | | 2 | › » |
| 5 | Դուլթեան Անդրանիկ | " » | 9 | հայր | Կորած | 1 | |
| 6 | Միքայէլեան Սիրանուշ | " » | 13 | — | | 2 | Քոյրն՝ Աշտարակ |
| 7 | Խաչատրեան Սիրվարդ | » » | 12 | — | | 2 | Եղբայր՝ Աշտարակ |
| 8 | » Նուարդ | » » | 5 | — | | 3 | » » |
| 9 | Միւջէֆէրջեան Կարապետ | » » | 8 | — | | 4 | Եղբայրներ » |
| 10 | » Քարմիլէ | » » | 7 | — | | 4 | |
| 11 | Խսիրեան Անուշիկ | » » | 14 | մայր | Աշտարակ | 2 | |
| 12 | Յարութիւնեան Յովհաննէս | › » | 10 | — | | 2 | |
| 13 | Պողպատեան Երուանդ | " » | 7 | մայր | Աշտարակ | 4 | |
| 14 | Քանքանեան Թոնիկ | » » | 4 | » | " | 2 | |
| 15 | Ճելկեան Արաքսի | » » | 9 | մայր | " | 4 | Հայրը՝ Վան |
| 16 | Մանուկեան Վարսենիկ | » » | 12 | | | 4 | |
| 17 | » Ատրինէ | » » | 10 | | | " | |
| 18 | Ատոմադայեան Վարդան | " » | 10 | հայր | Վան | » | |
| 19 | Գրիգորեան Հռիփսիմէ | » » | 10 | մայր | Երեւան | › | Եղբայրներ՝ Երեւան |
| 20 | » Արմենուհի | » » | 8 | " | » | » | » » |
| 21 | Բարսեղեան Արաքսի | » » | 9 | — | | 2 | Եղբայրն՝ Աշտ-ակ |
| 22 | Իսաջանեան Տիգրան | » » | 7 | — | | 2 | Մայրն՝ » |
| 23 | Դանկովեան Աղասի | » " | 10 | հայր | Պոլիս | 4 | » » |
| 24 | » Ռոզա | » » | 6 | » | › | » | |
| 25 | Խաչատուրեան Վարդէն | " » | 14 | » | » | 2 | |
| 26 | » Վարազդատ | » » | 12 | » | " | 2 | |
| 27 | Փանոսեան Սիրանուշ | " » | 13 | մայր | Թիֆլիս | 2 | |
| 28 | » Սիրարփի | › " | 8 | › | » | 3 | |
| 29 | Սարգսեան Աւետիս | » « | 13 | մայր | Աշտարակ | 2 | |
| 30 | » Գալուստ | » » | 9 | « | » » | 2 | |
| 31 | Յակոբեան Արաքսի | » » | 13 | — | | » | |
| 32 | Ալէքսանեան Լիւսի | . » | 13 | — | | » | Քոյրն՝ Աշտարակ |
| 33 | Յովհաննիսեան Գենովաբէ | » » | 12 | — | | » | Եղ. քոյր Իւդովկա |
| 34 | › Հայրիկ | » » | 14 | հայր | Ամերիկա | 1 | |
| 35 | Մամբրէեան Նարդուհի | " » | 4 | ? | Անյայտ | 3 | |
| 36 | Պետրոսեան Մոսօ | » » | 5 | — | | » | |
| 37 | Այգիկեան Գոհարիկ | » " | 4 | հայր | Կամաւոր | » | |
| 38 | Սերոբեան Վահան | › Քաղաքամէջ | 14 | հայր | Բագու | 2 | |
| 39 | « Տիգրանուհի | " » | 6 | › | " | » | |
| 40 | Մկրտչեան Աղաւնի | » » | 15 | » | Վան | 4 | Մայրն՝ Երեւան |
| 41 | Յովհաննիսեան Արծրուն | › » | 10 | — | | 2 | |
| 42 | » Յուդիթ | » » | 9 | — | | » | |
| 43 | Մովսէսեան Նշան | » Աղգա | 8 | մայր | Երեւան | 3 | |
| 44 | Յովհաննիսեան Գրաբիոն | » Շահպաղի | 14 | հայր | Էջմիածին | 2 | |
| 45 | » Երուանդ | » " | 8 | " | » | 3 | |
| 46 | » Ասանէթ | » › | 6 | " | › | » | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 47 | Մարգարեան Դաւիթ | Վան-Շանպաղի | 14 | — | | 2 | |
| 48 | » Խաչատուր | » " | 12 | — | | » | |
| 49 | Աւետիսեան Սաթենիկ | " Աւանց | 13 | — | | 1 | Ազգականներ ունի |
| 50 | Պետրոսեան Վարդանուշ | » Լէզկ | 13 | մայր | Գերուած | 4 | |
| 51 | Ալլահվերդեան Աղաւնի | » Կենդանանց | 14 | — | | 1 | |
| 52 | Մանուկեան Մարգարիտ | » » | 18 | — | | 4 | |
| 53 | Գրիգորեան Աղնիւ | » Շուշանց | 11 | մայր | Էջմիածին | " | |
| 54 | » Նունիկ | » » | 7 | " | " | » | |
| 55 | Պետրոսեան Աղաւարտ | " Լամդկերտ | 9 | հայր | Տաճ. բան. | 3 | |
| 56 | Խաչատուրեան Վազգէն | » Դարման գ. | 12 | " | Գերի Ռուս. | 2 | |
| 57 | Մկրտչեան Խաչատուր | » » » | 12 | » | Երկիր | " | |
| 58 | » Զարուհի | » » » | 10 | » | " | " | |
| 59 | Մարկոսեան Եսայի | Վան Արճշատ | 12 | մայր | Երկիր | 4 | |
| 60 | Սիմէօնեան Եւգինէ | " Պողանց | 7 | ? | | » | |
| 61 | Մուրադեան Մարիամ | » » | 11 | — | | » | |
| 62 | » Արամ | » » | 6 | — | | " | |
| 63 | Մկրտչեան Արմենուհի | » » | 10 | — | | 3 | |
| 64 | Սահփանեան Նոյեմզար | » » | 9 | — | | 1 | |
| 65 | Մովսէսեան Թովմաս | " Մարմետ | 9 | — | | 2 | |
| 66 | Ոնդոյեան Սանամ | » Կիլաշէն | 5 | — | | 3 | |
| 67 | Տէր-Յովհաննիսեան Յովհաննէս | » Խաւենց գիւղ | 13 | հայր | Վան | 4 | |
| 68 | Կարապետեան Ներսէս | » Ալիւր | 11 | — | | 4 | Հօրեղբայր՝ Ամեր. |
| 69 | Համբարձումեան Արմենակ | » Սոսրաթ | 6 | — | | 3 | |
| 70 | Գասպարեան Զմրուխտ | » » | 13 | հայր | Վան | 2 | |
| 71 | » Ղազար | » Ջանիկ | 14 | — | | 4 | |
| 72 | Սարգսեան Իսոր | » » | 12 | — | | " | Ազգականներ |
| 73 | Մխոյեան Մաքրուհի | » » | 8 | հայր | Օսմ. բան. | 3 | |
| 74 | » Արշալոյս | » » | 4 | » | " | » | |
| 75 | Միքայէլեան Գառնիկ | » Գործոթ | 10 | — | | » | |
| 76 | Մկոյեան Սիրուշ | » Ս. Թադոս | 7 | — | | » | |
| 77 | Միքայէլեան Խուսո | » Բերկրի | 10 | մայր | Կորած | 4 | |
| 78 | Սեդրաքեան Մարգար | » Խառակոնիս | 12 | — | | » | |
| 79 | Աւետեան Մեսրոպ | » » | 4 | — | | 3 | Ազգակ. Աշտարակ |
| 80 | Սաֆարեան Ազատ | » » | 12 | մայր | Անյայտ | 4 | |
| 81 | Յովհաննիսեան Վարսենիկ | » Մանդան | 14 | հայր | Օսմ. բան. | » | |
| 82 | Գրիգորեան Դաշնակ | » Բազալիկ | 6 | — | | 3 | |
| 83 | Արշակեան Վարսենիկ | » Հասփշատ | 6 | — | | 3 | |
| 84 | Մկրտչեան Աւետիս | » Անգղ | 10 | — | | " | Ազգական. անյայտ |
| 85 | Մովսէսեան Օղիկ | " » | 9 | — | | 3 | |
| 86 | Ոսկանեան Պետրոս | » » | 2 | հայր | Ամերիկա | 2 | Մայր՝ անյայտ |
| 87 | Բաղդասարեան Շուշանիկ | » » | 12 | — | | 1 | Հօրեղբայր Իգդիր |
| 88 | Ղազարեան Միսաք | » » | 14 | — | | 2 | |
| 89 | Յակոբեան Մաքրուհի | » Մաշտակ | 15 | — | | 2 | Հօրեղբայր՝ Պոլիս |
| 90 | Խաչատուրեան Նազլու | » Մարկս | 13 | — | | 4 | |
| 91 | Խաչատուրեան Հոփսիմէ | » » | 8 | — | | 3 | |
| 92 | Մուսոյեան Աղնիւ | » Նոր-գիւղ | 15 | մայր | Կորած | 3 | |
| 93 | Յարութիւնեան Յակոբ | " » | 10 | ունի | » | 1 | |
| 94 | Փոխանեան Դաւիթ | » Կեմ | 12 | հայր | Երևան | 2 | |
| 95 | » Շողօ | » " | 10 | " | » | 4 | |
| 96 | Պետրոսեան Վարսենիկ | » Գըզըլդաշ | 10 | " | Օսմ. բան. | » | Մայր՝ էջմիածին |
| 97 | Մխոյեան Բաղդասար | » Բէլու | 8 | — | | 3 | |
| 98 | Յովակիմեան Մարիամ | » Մոկս.(Շատ.) | 13 | մայր | Կորած | 2 | |
| 99 | Աւիկեան Հոփսիմէ | » Թաղ.(Շատ.) | 16 | — | | 3 | Հօրեղբայր՝ էջմ. |
| 100 | « Պարգև | » » » | 9 | — | | " | " " |
| 101 | » Վարսենիկ | » » " | 6 | — | | » | " " |
| 102 | Յովհաննիսեան Արշակ | » » " | 16 | — | | 4 | |
| 103 | Գարեգինեան Բերսաբէ | " " | 10 | հայր | Աշտարակ | " | |
| 104 | Յովհաննիսեան Գիւլնազ | » Փէսանդաշտ | 13 | — | | 1 | |
| 105 | Գասպարեան Մարգար | " Փիրպատալան | 8 | — | | 3 | |
| 106 | Դաւթեան Սերոբ | " Նարեկ | 12 | ունի | Գանձակ | 2 | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 107 | Գրիգորեան Առաքել | Վան Նոր-գիւղ | 9 | հայր | Աշտարակ | 4 | |
| 108 | Գրիգորեան Միքայէլ | » Արանց | 10 | » | Անյայտ | 3 | |
| 109 | Խաչատուրեան Յարութիւն | » Մչկանց | 11 | — | | 4 | Եղբայր՝ Վան |
| 110 | Մանուկեան Եղիազար | » Մչկանց | 11 | մայր | Աշտարակ | 4 | |
| 111 | Ղազարեան Մաքրուհի | » » | 14 | — | | " | |
| 112 | » Արամ | » » | 9 | — | | 3 | |
| 113 | Պետրոսեան Սեդրաք | " Խորտանց | 5 | հայր | Թիֆլիս | " | |
| 114 | Գալուստեան Արշաւիր | » Զկոր | 11 | մայր | Աշտարակ | 2 | |
| 115 | Մկոյեան Հայրիկ | » Բաղ(Բաշգ.) | 10 | » | Անյայտ | 1 | |
| 116 | Համբարձումեան Հայաստան | " Արճէշ | 11 | — | | 4 | Հօրեղբայր՝ Էջմ. |
| 117 | Միքայէլեան Արփենիկ | » Աղորաւ | 10 | հայր | Անյայտ | 3 | |
| 118 | » Սաթենիկ | » " | 7 | » | » | " | |
| 119 | Թորոսեան Եղիսաբեթ | " Բերդ | 9 | — | | 4 | |
| 120 | Կարապետեան Վարդգէս | Հասփնակ(Արճ.) | 10 | մայր | Էջմիածին | 1 | |
| 121 | Կարապետեան Ալմաստ | » Հասփնակ | 11 | — | « | " | |
| 122 | » Էթօ | » " | 9 | — | " | " | |
| 123 | Երանոսեան Միքայէլ | » | 11 | — | | 1 | |
| 124 | Միքայէլեան Ջէյրան | » Արճէշ | 15 | — | | 3 | Հօրեղբայր՝ Երևան |
| 125 | » Պօղոս | " » | 8 | — | | " | |
| 126 | Ղազարեան Զարուհի | " Բերդ(Արճէշ) | 13 | — | | 4 | Հօրեղբայր՝ Աշտ. |
| 127 | Կնեազեան Սերոբ | » Բերգակս » | 12 | հայր | Օսմ. բան. | 1 | |
| 128 | » Ջիւան | » » » | 6 | » | " » | " | |
| 129 | Յարութիւնեան Կարապետ | "Ներքին-Սփ. | 12 | ունի | Օշական | 4 | |
| 130 | Տէր-Մկրտչեան Հրանուշ | » Արճէշ | 13 | — | | 2 | Բնիկ զալաարցի |
| 131 | " Վարդանուշ | " " | 8 | — | " | » | " |
| 132 | Գրիգորեան Աղնիւ | " Ջէվէ (Ալջ.) | 14 | — | | 1 | |
| 133 | Գէորգեան Մուշեղ | "Ներքին-Սփ. | 12 | հայր | Օշական | 4 | |
| 134 | Սաֆարեան Գրիգոր | » Սոնջկուս | 12 | » | Անյայտ | » | |
| 135 | Խուրշուդեան Իգիթ | Բիթլիս,Գասո(Խիզ.) | 16 | " | Օսմ. բան. | " | Մայրն՝ գերուած |
| 136 | Մարգարեան Ազատ | ,, Ծղակ | 11 | " | Էջմիածին | 2 | |
| 137 | Մանուկեան Փիրոզ | ,, ,, | 10 | » | Բաթում | 4 | |
| 138 | Կարապետեան Մաքրուհի | ,, ,, | 10 | — | | 1 | |
| 139 | Յարութիւնեան Բզօ | ,, Թեղուտ | 8 | մայր | Կարած | 3 | |
| 140 | Մարգարեան Արմենակ | ,, Հերանք | 12 | — | | 2 | |
| 141 | Բաղդասարեան Աղնիւ | ,, Ախլաթ | 10 | — | | 2 | Եղբայրն՝ Էջմիած. |
| 142 | Մանուկեան Զարուհի | ,, Ծղակ | 14 | — | | 1 | |
| 143 | Յովհաննիսեան Սիմէօն | ,, Տափավանք | 10 | մայր | Գերուած | 3 | |
| 144 | Յակոբեան Մարիամ | ,, ,, | 15 | — | | | |
| 145 | » Բաղէ | ,, Ծաղկէ | 13 | — | | 2 | |
| 146 | Հոլոյեան Գրիգոր | » Մալաքանդ | 16 | մայր | Աշտարակ | 1 | |
| 147 | " Զարդար | » " | 14 | » | » | " | |
| 148 | Մերզին | » » | 5 | » | " | " | |
| 149 | Զօզօ | " » | 4 | » | " | » | |
| 150 | Մանուկեան Մարգարիտ | " Փրխուս | 13 | հայր | Օսմ. բանակ | " | |
| 151 | " Սողօ | » " | 9 | » | » | . | |
| 152 | Մարգարեան Ջանօ | » » | 13 | — | | " | |
| 153 | . Բայազ | » " | 9 | — | | " | |
| 154 | » Հմայեակ | » » | 8 | — | | " | |
| 155 | Մուշեղեան Ռուբէն | Բիթլիս-Փրխուս | 9 | — | | 2 | |
| 156 | » Կատիֆ | » " | 7 | — | | 2 | |
| 157 | Մկրտչեան Սոկրատ | » " | 13 | հայր | Օսմ. բանակ | 1 | Հօրեղբայր |
| 158 | » Մարգարիտ | » " | 9 | » | " | 1 | " |
| 159 | Խաչատրեան Աղնիւ | » " | 14 | մայր | Աշտարակ | " | |
| 160 | Սեդրաքեան Միսաք | » " | 16 | — | | » | |
| 161 | » Լևոն | » " | 11 | — | | " | |
| 162 | . Աղաւնի | » » | 7 | — | | " | |
| 163 | Վարդանեան Զմրուխտ | » " | 10 | մայր | Երկիրդ | " | |
| 164 | » Անթառամ | « » | 9 | » | Հիւան | " | |
| 165 | » Միսաք | " " | 7 | » | » | " | |
| 166 | Սեդրաքեան Բայազ | » » | 11 | հայր | Անյայտ | 3 | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 167 | Սաֆարեան Գրիգոր | Բիթլիս-Փրխուս | 13 | — | | 4 | |
| 168 | » Միսաք | » " | 11 | — | | ,, | |
| 169 | " Մերուին | " " | 9 | — | | 4 | |
| 170 | " Մելիք | " " | 7 | — | | ,, | |
| 171 | Յարութիւնեան Մեսրոպ | " " | 12 | — | | 1 | |
| 172 | Սէթոյեան Դաւիթ | " " | 8 | — | | 4 | |
| 173 | Մարոյեան Սամսոն | " " | 9 | հայր | Սարիղամիշ | 4 | |
| 174 | " Եղնար | " " | 7 | ,, | ,, | ,, | |
| 175 | Եղիազարեան Զինէ | " " | 14 | մայր | Կարս | 1 | Կոյր |
| 176 | Պետրոսեան Սիրանոյշ | " " | 6 | հայր | Օսմ. բան. | ,, | |
| 177 | Մաթոյեան Փարիշ | " " | 10 | ,, | Կորած | | |
| 178 | Մանթաշեան Ալեքսան | " Գեարոլ | 10 | մայր | Աշտարակ | 4 | |
| 179 | Զաքարեան Սաթենիկ | " " | 12 | մայր | Բիւրական | ,, | |
| 180 | Բարսեղեան Ֆինջօ | " " | 9 | — | | ,, | |
| 181 | Սիմոնեան Զիչօ | " » | 14 | — | | ,, | |
| 182 | " Նուարդ | " " | 12 | — | | ,, | |
| 183 | " Գիւլնազ | " " | 7 | — | | ,, | |
| 184 | Նազարեան Ռուբէն | " " | 12 | մայր | Բիւրական | 4 | |
| 185 | " Ալմաստ | " " | 11 | ,, | ,, | ,, | |
| 186 | Բաղդասարեան Կարապետ | " " | 12 | հայր | Երկիր | 4 | Մայրը՝ գերուած |
| 187 | Սերոբեան Աստուածատուր | " " | 12 | մայր | Բիւրական | 4 | |
| 188 | Մխոյեան Բերսաբէ | " " | 9 | — | | ,, | |
| 189 | Կարապետեան Գիւլնազ | " Լիզ | 10 | — | | 4 | |
| 190 | Ցակոբեան Մուշեղ | " " | 11 | մայր | Կորած | 1 | |
| 191 | Միքեան Տամաթիա | " " | 6 | — | | 3 | |
| 192 | Զաքարեան Սուվար | " Կոփ | 10 | մայր | Աշտարակ | 2 | |
| 193 | Զաքարեան Եղօ | " « | 8 | ,, | ,, | ,, | |
| 194 | Բաղդասարեան Յովսէփ | " Ռոնջոր | 13 | հայր | Ապարան | 2 | Եղայրներ՝ Թիֆլիս |
| 195 | Աւտալեան Սանամ | Մանազկերտ-Բերդ | 14 | — | | 1 | Հօրեղբայրներ |
| 196 | " Խաչատուր | ,, ,, | 9 | — | | ,, | ,, |
| 197 | " Սաչլի | ,, ,, | 7 | — | | ,, | ,, |
| 198 | » Պօղոս | » " | 6 | — | | ,, | ,, |
| 199 | Արմենակեան Միսաք | Մուշ Վարդենիս | 11 | — | | 2 | ,, |
| 200 | Մկրտչեան Մուրադ | » " | 13 | — | | ,, | ,, |
| 201 | Աբրահամեան Շմաւոն | » " | 7 | — | | 3 | |
| 202 | Մարտիրոսեան Վահան | » " | 13 | — | | 2 | |
| 203 | Մուրադեան Արամ | » Առնիստ | 12 | — | | 1 | Քեռի ? |
| 204 | Յովհաննիսեան Ֆարհատ | » " | 7 | հայր | Աշտարակ | ,, | |
| 205 | " Պարգեւուհի | » Դրմետ | 10 | մայր | Էջմիածին | 3 | |
| 206 | Ասոյեան Աբրահամ | » Արտոնք | 12 | — | | 2 | |
| 207 | Խաչատուրեան Մաքրուհի | » Խարց | 12 | — | | 2 | |
| 208 | Եղիազարեան Անուշաւան | Մուշ | 12 | — | | 1 | |
| 209 | Մուրադեան Սֆիոն | » Խուլիկ | 15 | — | | 4 | Հօրեղբայր |
| 210 | " Լեոն | » " | 12 | — | | ,, | ,, |
| 211 | ,, Թագուհի | » " | 10 | — | | ,, | ,, |
| 212 | ,, Ջհանգաս | » " | 8 | — | | ,, | ,, |
| 213 | ,, Արփիար | » " | 6 | — | | ,, | ,, |
| 214 | ,, Ֆինջօ | » » | 8 | մայր | Կորած | ,, | Հայր՝ Օսմ. բանակ |
| 215 | Բարխոյեան Ենովք | » » | 11 | — | | ,, | |
| 216 | Ցակոբեան Առաքել | Մանազկերտ-Տօլ | 10 | — | | ,, | |
| 217 | Սիւքիասեան Ցակոբ | Ալաշկերտ Ջեթ. | 9 | մայր | Աշտարակ | 3 | |
| 218 | Պետրոսեան Դերենիկ | Բերդ | 7 | — | | ,, | Եղբայր՝ Ղարաքլիսէ |
| 219 | Ղարիբջեան Արաքսի | " » Բերդ | 15 | մայր | Թիֆլիս | 4 | |
| 220 | Խաչոյեան Արամ | » Եօնջալու | 11 | ,, | Կարս | ,, | |
| 221 | Թադէոսեան Սրաբիոն | » Բերդ | 13 | հայր | Օսմ. բան. | ,, | |
| 222 | Ծաղիկ | ? | 4 | — | | 3 | Զգիտէ |
| 223 | Մկոյեան Մաքրուհի | ? | 6 | — | | 3 | ,, |
| 224 | Մելքոնեան Զօզա | ? | 7 | — | | 3 | ,, |